# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ

## ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ ՀԵՏԱՔՐՔԻՐ ԿԼԻՆԻ

— Սիրում եմ կենդանիներ նկարել, հատկապես ձիեր, բայց հակառակի նման, իմ նկարած ձիերը լավ չեն ստացվում,— ասաց Չարենցի անվան դպրոցի նկարչական խմբակի անդամ, 5-րդ դասարանցի Գոհարիկը:

— Շատ եմ նկարում, բայց նկարներիս մեծ մասը դեն եմ գցում: Մի քանիսը պահում եմ, բայց հետո նորից դեն գցում: Սկզբում շատ եմ հավանում, հետո տեսնում եմ, որ այն չէ:

Գոհարիկը մի քանի գծանկար ցույց տվեց: Իմ հարցին՝ դե՞ն ես գցելու, նայեց ժպիտով, որ նշանակում էր՝ առայժմ հավանում եմ:

— Գասպարը տներ է սիրում նկարել: Երևի շինարար կդառնա,— ասաց Արմենը:

— Իսկ դու՞:

— Ծառեր եմ սիրում նկարել ու դեղին-կարմիր տերևներ:

— Անտառի պահակ ես դառնալու,— ասաց Գասպարը ու ծիծաղեցին:

— Իսկ ամենից լավ ո՞վ է նկարում:

— Լիլիան,— միաժամանակ ասացին բոլորը:

— Սիրում եմ հեքիաթներ ձևավորել, նկարել գյուղ, բնություն: Թեև քաղաքում եմ ծնվել ու ապրել, քաղաք նկարել չեմ սիրում,— ասաց նկարչական խմբակի ղեկավար, 9-րդ դասարանի աշակերտուհի Թորոսյան Լիլիան և ցույց տվեց պիոներսենյակի պատին փակցված իր աշխատանքները՝ «Սասունցի Դավիթ», «Հայաստանի 60-ամյակին», «Ծառեր», «Աշնանային պատկերներ»...

Լիլիայի, Գոհարիկի, Արևիկի, Վիրապի նկարներին նայելիս անպատճառ կմտածեք՝ այսպիսի լեռ միայն Հայաստանում կա, այսպիսի արև, քարեր. երկինք միայն Հայաստանում կարող ես տեսնել:

Խմբակի անդամները այժմ պատ-

ԱՐԵՎԻԿ ՆԱԼՉԱՋՅԱՆ «Եղնիկներ»



# 60-ԱՄՅԱԿԻՆ ԸՆԴԱՌԱՋ

րաստվում են Հայաստանի կոմերիտմիության 60-ամյա տարելիցին նվիրված ցուցահանդեսին: Հայաստանի կոմերիտմիությունը գրեթե հանրապետության հասակակիցն է: Հանրապետության հաջողությունները ու հաղթանակները նրա հաղթանակներն են, հանրապետության հոգսերը՝ նրա հոգսերը, և Սովետական Հայաստանին նվիրված նկարներից շատերը նույն հաջողությամբ կարելի է և Հայաստանի կոմերիտմիությանը նվիրված ցուցահանդեսում ցուցադրել:



ՀԱՄԼԵՏ ԳԱԼՍՏՅԱՆ
«Նատյուրմորտ»



ԼԻԼԻԱ ԹՈՐՈՍՅԱՆ
«Նատյուրմորտ»

Բայց խմբակի անդամները որոշել են հոբելյանին միայն նոր գործերով ներկայանալ: Հոկտեմբերյանի «Արաքս» սովխոզում մասնակցել են հերոս կոմերիտականներին նվիրված ծառատունկին ու ծառ տնկելու հետ մեկտեղ ստեղծել նկարներ, որոնցից լավագույնները կցուցադրվեն:

— Մտադիր ենք,— ասաց Լիլիան,— մասնակցել դեպի Մասիսի շրջանի Ղուկասյան գյուղ, կոմերիտմիության թանգարան կազմակերպվող էքսկուրսիային: Հուսով ենք լավ աշխատանքներով վերադառնալ:

ՍՏ. ԶԱՔԱՐՅԱՆ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՁՅԱՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐԵՎ

Քամին հող է բարձել
Ապառաժի վրա,
Եվ ծաղիկ է դարձել
Տքնությունը նրա:

Քո լույսի տակ անքուն,
Քո քնքշությամբ թեթև,
Քարերն էլ են ծաղկում,
Հայաստանի արև:

Լուռ այրում ես դու քեզ
Դարե՜ր, դարե՜ր, դարե՜ր,
Ուրիշ հմայք ունես,
Հայաստանի արև:

## ԵՐԱԶ

Ձմռան գիշեր էր, աղջիկը քնած,
Ծաղիկներ տեսավ մեկ էլ երազում,
Պարզ առավոտ էր բացվել ցողաթաց,
Ուրախ զնգոցով առվակն էր վազում,
Զյունը լեռներում եկել էր ծունկի,
Ծիծաղ էր մաղում երկինքը վերից:
Աղջիկը երգն էր լսում ծաղկունքի,
Ինքն էլ նրանց հետ երգում էր անհոգ...
— Երանի նրան, ով ձմռան ցրտին
Գարուն է տեսնում տաք ու արևոտ:

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# ԿԱՆԳԱՌ-ՆԵՐ ԺԱՆՐԱ-ՊԱՐՀԻՆ

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ



## 2. ԴՈՒ ԳՈՐԾ ՈՒՆԵՍ ԳՐԻ ՀԵՏ

Իմ խաս հորաքույր Արզուքաճի կարած մավի շալվար-բլուզը հանեցինք, խնամքով ծալեցինք, հագանք պետության տված կապույտ համազգեստը: Մեր ռետինե տրեխները վայրկենական հանեցինք, դեն գցեցինք ու հաճույքով հագանք պետական տաք ու ծանր կոշիկները: Ավելի խոր թաքցրինք մեր ունեցած մի երկու ռուբլին և տղամարդավարի բոլորեցինք ճաշարանի սեղանները: Ես միայն բերաններ էի տեսնում: Տակավին զինվորական կեցվածքի մեջ փայլող մեր ղեկավարը՝ Շալիկո Մանուչարյանն ասաց.

— Կերեք ինչպես ձեր տանը: Ով ոնց ուտում է, էնպես էլ սովորում է, աշխատում է, շարժվում է: Ով չկշտանա, լրացուցիչ ուզենա, թող ասի: Կերեք, ձեր ոսկորները, ես գիտեմ, քաղցած են:

Այսպես, Երևանում, արհեստագործական 3-րդ ուսումնարանում ես զգացի, որ մաճի, կալ ու կամի, գերանդու, կացնի, բահ ու քլունգի սովոր իմ ձեռքերը թողել եմ գյուղում, դրանք էլ չկան, և ականջներիցս դուրս եկան գյուղական բզզոցները: Ուշադիր լսում ենք, թե ի՞նչ է ասում ուսումնարանի դիրեկտոր Հովհաննես Հովհաննիսյանը: Նա ասում է, որ նախանձելի մասնագիտություն է մեզ վիճակվել սովորելու: Նա ասում է՝ մարդիկ իրենց մտքերն արտահայտում են տառերի, բառերի, նախադասությունների միջոցով: Իսկ գործ ունենալ նախադասության հետ, նշանակում է գործ ունենալ հազար մտքի, զգացմունքի հետ: Դուք գիրք եք ստեղծելու: Իսկ մեր մարդկանց հացի նման անհրաժեշտ է գիրքը: Օ՜, երանի թե ես էլ լինեի ձեր տարիքին ու ձեզ հետ սովորեի գրաշարություն, տպագրչություն: Երեք տարի դուք լինելու եք մեր սաները: Այնպես սովորեք, որ հետագայում, տպարանում աշխատելիս, ձեր մասին ասեն՝ հալալ լինի ձեր կերած հացը:

Արծրուն Լալայանը, որ մեզ ընդհանուր պոլիգրաֆիա էր դասավանդում, իմ կարծիքով, իրեն պահում էր պրոֆեսորի պես (ես պրոֆեսոր դեռ տեսած չկայի): Նա չէր մոռանում ասել, թե հիմա ինչ լավ գրքեր են գրվում, որոնց շարողները, տպագրողները լինելու էինք մենք:

Գրաշարություն:

Պետք է վարժ սովորել տառերի տեղերը, այնպես սովորել, որ աչքերդ փակ, մատներդ տեսնեին:

Ում հետ խոսում ես, հայրը պատերազմից կամ չի վերադարձել, կամ վերադարձել է վիրավոր: Ինչ-որ տեղնագին ձգտում կա՝ շուտ սովորել արհեստը: Ո՞նց չտխրես: Առավոտները «վերկացից» հետո չես տեսնում մորդ: Եղբորս եմ տեսնում, որ բոլորից վաղ է արթնանում: Գյուղում նրա ուշքն ու միտքը գրքերն էին, այստեղ էլ լինոտիպ մեքենան ու տողաշարը: Տողաշարը ձեռքին տարբեր տառարկղերից տողեր է շարում, շարվածքից օտիսկ հանում ու փորձում տառերի գեղեցկությունը:

— Հը՞, մեր տղա, ասում են կարոտում ես տունը, հա՞,— պատերազմում կիսատված Սուրենն է, մեր պարետը:

— Ճա՞տ,— ասում եմ այնպես, ասես ուր որ է նա մարելու է իմ կարոտի ծարավը:

— Կարոտը հաց չի դառնա: Դու եկել ես արհեստ սովորելու: Դրա մասին մտածի:

Մեր ուսուցիչներից շատերը պատերազմի մասնակիցներ էին: Ճալիկո Մանուչարյանը ճանաչեց իր գնդի Պողոսի տղային.

— Հերդ լավ զինվոր էր, տեսնենք հորդ ես քաշե՞լ, թե չէ:

Բայց մենք կարծես եկել էինք ուտելու: Մեզ կշտացնել էր պետք: Մենք ագահությամբ ենք նայում ոչ միայն հացին, այլև մեր վաղվա հացին՝ մեր ընտրած մասնագիտությանը:

Կոմպոզիտոր Երվանդ Սահառունին գալիս է, խփում դաշնամուրին և ասում.

— Տղա ջան, հիմա էլ ասա՝ ա՜ ա՜ ա՜...

— Ա՜ ա՜ ա՜...— հերթով գալիս և կոմպոզիտորին մեր «ա»-երն ենք նվիրում: Նա քիչ «ա»-եր վերցրեց: Առաջին մեծ զարմանքս էս մեծ քաղաքից, որ ընդամենը մի «ա»-ով նա որոշեց, թե ով ձայն ունի, ով չունի:

Բռնցքամարտիկ Վլադիմիր Ենգիբարյանն է գալիս: Ինքն էլ է եղել ուսումնարանի սան, հիմա օլիմպիական չեմպիոն է: Նա մի նայելով ջոկում է խոստումնալից սաներին:

Պարուսույց Ազատ Ղարիբյանն է գալիս: Պարզապես ասում է.

— Ո՞վ ցանկություն ունի պարելու:

Արծրուն Լալայանը հանգիստ ասում է.

— Ով ընտրած մասնագիտությունը լավ չսովորի, թույլ չենք տա, որ մասնակցի որևէ խմբակի պարապմունքներին:

Մեր դիրեկտոր Հովհաննես Հովհաննիսյանն ասում է.

— Էլ ի՞նչ գրաշար, տպագրիչ կամ լինոտիպիստ, որ լավ երգել, պարել չիմանա: Պատկերացրեք, որ շարել եք ասենք, Դերենիկ Դեմիրճյանի նոր գիրքը և այդ առթիվ հեղինակի հետ հանդիպում եք ունենում: Թող զարմանա Ավարայրի ճակատամարտից եկող գրողը, որ դուք ոչ միայն լավ գրաշար ու տպագրիչ եք, այլև լավ երգում եք, լավ պարում, լավ բռնցքամարտիկ եք:

Մեր ընտրած մասնագիտությունը, գումարած որևէ խմբակում պարապելը, գումարած այն, որ շատերս կիրակի օրերը շտապում ենք... «փայլաքազար»: Երեկոները ուրախ-ուրախ գալիս եմ հանրակացարան՝ գրպանումս «փայլաքազարում» վաստակածս մի քանի ռուբլի: Եղբորս ասում եմ, որ վաղը երշիկ կուտենք:

— Գեղարվեստական գիրք եմ ուզում,— ասում է եղբայրս:

— Գիրքը փոր չի՛ կշտացնի,— մեծավարի վրա եմ բերում ես:

Համալսարանի սև շենքի դիմաց բը-

նակելի շենք է կառուցվում: Ասում են, որ այդ շենքում ապրելու են դասախոսներ, պրոֆեսորներ: Ես շենքի պատուհաններից միշտ ներս եմ նայում: Դասախոսները աղջիկներ կունենան, որոնք երեկոյան այս պատուհաններից դուրս կնայեն: Ես ներքևից կնայեմ նրանց ու իմ մտքում կասեմ՝ ես ձեզանից շուտ եմ նայել...

Լուսյա Նիկոլյանը համար սաներ է փնտրում պատի թերթի համար նյութեր գրել տալու: Եղբորս շուտ է գտնում: Եղբայրս՝ Կիրովականի մանկավարժական ուսումնարանում մեկ տարի սովորած, հարևան գյուղի միջնակարգ դպրոցի յոթերորդից բարձր դասարանում մի տարի սովորած, մեր գյուղի դպրոցն էլ գերազանց ավարտած, ի՜նչ համով, հոտով նյութեր է գրում: Լուր է տարածվում, որ ավարտելուց հետո Հրանտին պահելու են ուսումնարանում՝ որպես պատի թերթերի նյութ գրող: Դիրեկտորը հպարտանում է, ասում է, որ Հրանտին իր ընկեր Վահան Հովհաննիսյանն է բերել, նրանից լսել է, որ Հրանտը շատ բանաստեղծական անկյունում է ծնվել, լավ կլինի, որ նաև բանաստեղծություններ տա պատի թերթին: Եղբորս անունը կնքվեց բանաստեղծ:

Ամեն ինչ լավ է: Միայն շատ ենք ծիծաղում իրար խոսելաձևի վրա: Ամեն մեկն ուզում է իր բարբառով բարձրը խոսելով հաղթել մյուսներին: Մեր Լոռվա բարբառը հաղթում է, որովհետև մեջներս ուժեղ Սեյրան կա, պատի թերթի թղթակից Հրանտ կա, ղաչաղանցի ու գյուլագարակցի, վահագնեցի ու կիրովականցի տղերք կան: Բոլորին համոզում ենք, որ խոսեն մեզ նման, որովհետև եթե Լոռվա լեզուն լավը չլիներ, Հովհաննես Թումանյանը ուրիշ լեզվով կգրեր:

Ամեն առավոտ, ամեն կեսօր դեպի ճաշարան՝ քայլով մարշ: Ճաշից հետո դեպի ուսումնարան՝ քայլով մարշ:

Տանում են պիոներների պալատ շատ լավ ներկայացում դիտելու, որ նաև դաստիարակչական է լինելու, դեպի դաստիարակության օջախ՝ քայլով մարշ:

Ընկեր Սաֆարյանը մեզ տանում է բաղնիք՝ շարքով մարշ մինչև տրամվայի կանգառ: Աղմուկով լցվում ենք տրամվայ, հասնում կոլտնտեսային շուկա, իջնում, շարվում, շարքով մարշ դեպի երկրորդ բաղնիք: Բաղնիքից հետո, մաքուր, թեթև՝ քայլով մարշ դեպի ուսումնարան:

Մենք այնպես հպարտորեն ենք անցնում քաղաքի փողոցներով, որ ասես մենք ենք քաղաքը կառուցել:

Վարպետները մի հոգս ունեն՝ մեզ մարդկային ճիշտ կաղապարի մեջ դնել, կյանքի համար պիտանի դարձնել:

Մեր ապագայով ոգևորված ի՜նչ նամակներ ենք գրում տուն. «Սովորում ենք լավ, վարպետները գոհ են, արհեստի գաղտնիքները մեզ են՛ փոխանցում: Ավարտելուց հետո կաշխատենք տըպարաններում: Ավարտելուց հետո երկու տարի իրավունք չկա մեզ բանակ տանելու: Եթե բանակ տանեն, այնտեղ առաջին հերթին իրավունք ունենք ծառայելու մեր սովորած մասնագիտությամբ»:

Արդեն մեկնում ենք արտադրական պրակտիկայի: Աշխատավարձի երեսուներեք տոկոսը մեզ է պատկանում:

Արդեն որպես վաղվա մասնագետ ես մտնում տպարան, քեզ տրվել է մեքենա,

շարվածքային գիրք, գլխիդ կա վարպետ:

Ծաշում ենք գյուղատնտեսական ինստիտուտի ճաշարանում և... անընդհատ վեճի բռնվում ուսանողների հետ: Մի երեկո, մեր աչքաբաց տղերքից երկու հոգի ներս մտան ու վազեցին Հրանտի մոտ.

— Որ էլ ուսանող չեն լինում, դրանից բարձր են լինում, դրան ի՞նչ են ասում:

— Ասպիրանտ,— հանգիստ պատասխանեց Հրանտը:

Մենք զարմացած էինք Հրանտի գիտելիքների վրա: Տղերքը իրար նայեցին ու ապշեցին:

— Դա՜հ, ուրեմն մեր կռիվն ասպիրանտի հետ էր:

— Բայց ի՞նչ իմացաք ասպիրանտ էր, ի՞նչ նշաններ ուներ,— հարցրեց Հրանտը:

— Համ շատ քաղաքավարի էր խոսում, համ էլ ձեռքին պորտֆել կար...

Եվ նման հազար ու մի ուրախ ու տխուր բաներ: Ավարտում ենք ուսումնարանը: Այնպես ենք ուրախացել, որ ասես մեզնից առաջ ոչ ավարտող է եղել, ոչ էլ կլինի:

Տպարաններում մեզ են սպասում: Մեզ կանչում են, հարցնում, թե որ տպարանն ենք ընտրում: Հորաքրոջս տղան պարզապես վազեց Կիրովական... Ինչ դժվար է բաժանվել ուսուցիչներից, վարպետներից, երեք տարվա ընկերներից: Բայց տպարանում քեզ են սպասում:

(շարունակելի)

# ՍԵՎԱՆԻ

Վալերի Կոսյանը Կամոյի շրջանի Սարուխան գյուղի № 1 միջնակարգ դպրոց էր եկել Բաքվից: Թեև երիտասարդ էր, անփորձ, բայց բազմակողմանի զարգացած էր ու հետաքրքրասեր: Առաջին օրերին ու ամիսներին ծանոթանում էր գյուղին ու նրա շրջապատին: Հետո աշակերտներից տուրիստական-հայրենագիտական ջոկատ կազմեց:

Մեկ տարի չանցած, ջոկատի անդամները, հավաքած ազգագրական նյութերով, պատմական հուշարձանների, տեսարժան վայրերի լուսանկարներով դպրոցում թանգարան բացեցին: Այդ նույն տարում էլ ոչ հեռավոր արշավների էին մեկնում:



— Մի օր էլ,— պատմում է ջոկատի անդամ Արծրուն Հունանյանը,— ընկեր Կոսյանն ասաց, թե երկարատև ճամփորդություն է սպասում մեզ: Պարզվեց, որ շրջագայելու էինք Սևանի շուրջը, բայց ոչ թե նրա ափով, այլ բնակավայրերով: Մենք լավ նախապատրաստվեցինք՝ սկսած ուտելիքից,

# ՇՈՒՐՋԸ





վերջացրած թել ու ասեղով, արտահագուստով, օժանդակ հարմարանքներով. այն ամենով՝ ինչ անհրաժեշտ էր տասնըհինգ օր լեռներով ու ձորերով անցնելու, սնվելու և գիշերելու համար:

Հուլիսի երեքի առավոտյան, Սարուխան գյուղի միջնակարգ դպրոցի բակից նրանք մեկնարկ վերցրին:

Առաջին հանգիստը Երանոս գյուղի անտառում էր, որտեղ հանդիպեցին անտառապահին: Իմացան, թե ինչ կենդանիներ են ապրում, ինչ ծառատեսակներ ու բույսեր են աճում այնտեղ:



Տասնհինգ օրերի ընթացքում նրանք լեռների կատարներ են մագլցել, գետեր անցել, ճահիճներում ընկղմվելու վտանգին ենթարկվելու, լեռնահոս գետակներից ձուկ որսացել:

— Մենք շատ հետաքրքիր հանդիպումներ ունեցանք նաև Կրասնոսելսկի շրջանում, այցելեցինք Բորյան եղբայրների անվան տուն թանգարանը, զրուցեցինք շրջանի աշխատավորության ներկայացուցիչների, աշխատանքի, պատերազմի ու կոմերիտմիության վետերանների հետ,— ասում է ջոկատի անդամ Յուրիկ Վոշիկյանը:— Արփա-Սևան ջրատարի երրորդ թունելախորշի թունելագործները մեզ ուղեկցեցին թունելախորշ, մենք երբեք չենք մոռանա այդ հանդիպումը:

Այն, որ ջոկատը տասնհինգ օր շարունակ իսկապես հետաքրքիր, բովանդակալից կյանքով է ապրել, դըպրոցում իմացան ավելի ուշ, դասերն սկսվելուց հետո: Նրանք թանգարան էին տարել հանդիպումների, դժվար անցումների մասին պատմող նկարների ալբոմները, առանձին անկյունով ներկայացրել Ջողից, Արփա-Սևան ջրատարից և երթուղու այլ հատվածներից վերցրած տարբեր հանքային հանածոների նմուշներ: Պակաս ուշագրավ չէին նաև արհեստավորական և գյուղատնտեսական տարբեր գործիքների նմուշները:

ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ

# Պապս

ՌԱԶՄԻԿ ՏՈՆՅԱՆ

Պապս գյուղի դարբինն էր
Ու երգիչն էր մեր գյուղի,
Երբ մի քիչ էլ հարբում էր
Նաև պարողն էր գյուղի:

Պապս գյուղի պապիկն էր,
Հեքիաթասացն էր գյուղի,
Որ երգերով կպատմեր,
Աչքը հառած աստղերին:

Աչքը հառած աստղերին
Ի՜նչ հրաշքներ կարարեր,
Մինչ կապույտը կանթեղի
Կրակներով պարուրվեր:

Պապս գյուղի դարբինն էր
Ու երգիչն էր մեր գյուղի,
Երբ մի քիչ էլ հարբում էր՝
Խենթ իմաստունն էր գյուղի:





# Հողի երգը

*(ժողովրդական)*

ՍԻՄՈՆ ՖԱՐՄԱՆՅԱՆ

Եղավ այնպես, որ
Տիրոջից խռով մի հողակտոր
Ծահճացավ ու եղեգնակալեց.
— Կորանք մենք, որդիք, էլ ճար չմնաց,
Ապերախտ արտը թողեց մեզ անհաց:
Գնացեք գոնե եղեգը բերեք,
Ձմեռվա ցրտին ցախի տեղ վառենք:
Գնում են նրա զավակները հանդ,
Լսում եղեգի շշուկը հանդարտ.
— Կտրեցեք դուք մեզ, կտրեցեք տարեք,
Տարեք ու վառեք, և եթե կուզեք,
Սրինգ էլ սարքեք:— Տարան վառեցին,
Տարան ու նաև սրինգ սարքեցին,
Եվ եղեգները թե՛ վառարանում,
Թե՛ իբրև սրինգ, նույնն էին ասում.
— Եկ հողդ վարի, եկ հողդ վարի,
Քաղցած չես մնա դու եկող տարի:

# Արևը

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Երկինքը՝ ծով,
Լեռները՝ ափեր
Ու լեռներին՝ փրփուր ամպեր:
Լողում է մեղմ
Դեպի հարավ,
Արևն՝ ինչպես կարմիր կարապ:
Լողում է լուռ,
Փետուրներն իր
Թողած դաշտին ու քաղաքին,
Լողում է լուռ,
Ու ներքևում
Կանաչում են արտն ու այգին:

# Գիշեր

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

Ծառերն հոգնեցին արևի տապից,
Քնել են ուզում:
Խոտերն հոգնեցին քամուն լսելուց,
Քնել են ուզում:
Ծտերն հոգնեցին կեր որոնելուց,
Քնել են ուզում:
Բայց այս ի՞նչ ձայն է,
Այս ի՞նչ ժխոր է
Լցվել չուրջբոլոր:

— Այդ ծղրիդներն են՝
Ճարտար դերձակներ,
Որ աստղի թելից,
Լուսնի կտորից,
Ասեղ երգերով
Բոլոր-բոլորին
Ձևում-կարում են
Փափուկ անկողին:

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 40. ՌՈՄԱ, ՌԻՄ, ՀՌՈՄ՝ Ո՞ՐՆ Է ՃԻՇՏ, ԿԱՄ ՏԱՌԱԴԱՐՁՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Բոլորն էլ ճիշտ են՝ յուրաքանչյուրն այն լեզվում, որո՛վ գործ է ածվում: Բայց չէ՞ որ դա նույն քաղաքի հատուկ անունն է, ինչո՞ւ է տարբեր լեզուներում տարբեր կերպ գրվում և հնչում: Այդպես լինում է այն պատճառով, որ ամեն մի լեզու հնչյունական իր համակարգն ունի, և պարտադիր չէ, ո՛ր միևնույն անունը տարբեր լեզուներում նույն կերպ հնչի: Եթե փոխառնված մի որևէ հատուկ անուն չի բռնում տվյալ լեզվի հնչյունական համակարգին, ապա դա ենթարկվում է փոփոխության ըստ ընդունող լեզվի ներքին օրինաչափությունների: Երբեմն փոփոխությունն այնքան զգալի է լինում, որ նույնիսկ դժվարանում ես կռահել՝ դա նույն անու՞նն է արդյոք: Հիշենք նախորդ զրույցում բերված օրինակը՝ Հովհաննես-Իվան-Ժան-Ջոն-Ջիովաննի:

Հատուկ անունների փոխակերպումները ևս քմահաճույքի հետևանք չեն, այլ լեզվի հնչյունական համակարգի պահանջ: Եթե, ասենք, ռուսերենը չունի հ, ճ, ղ հնչյունները, ապա պարզ է, թե ինչու ռուսերեն գրվում է Гамлет, Гегель, Ачарян, Шогик, Кипиани, Чиаурели և ոչ թե՝ Համլետ, Հեգել, Աճառյան, Շողիկ, Ղիփիանի, Ճիաուրելի: Մենք էլ ռուսական, վրացական կամ անգլիական հատուկ անունները ճիշտ այնպես չենք գրում և արտասանում, ինչպես իրենք ռուսները, վրացիները կամ անգլիացիները: Տարբերությունները, մեծ կամ փոքր, կան և դրանք անխուսափելի են:

Խնդիրն ավելի կբարդանա, եթե աչքի առաջ ունենանք, որ նույն լեզվի մեջ անգամ նույն տառը տարբեր բառերում տարբեր կերպ է հնչում: Ասենք, դ տառը դար բառի մեջ դ էլ հնչում է, վարդ բառի մեջ թ է հնչում: Լեզվաբանները վկայում են, որ ռուսերեն г տառը гора, рог, легкий բառերում տարբեր հնչողություն ունի, ինչպես անգլերեն a տառը hat (գլխարկ), lake (լիճ), father (հայր) բառերում:

Եվ ահա հնչյունաբանական և հնչերանգային օրինաչափությունների տարբերությունների պատճառով հատուկ անունները տարբեր լեզուներում տարբեր կերպ են գրվում և արտասանվում: Իտալացին իր մայրաքաղաքը կոչում է Ռոմա, ռուսերենում այդ անունը դառնում է Ռիմ, հայերենում՝ Հռոմ: Ֆրան-

 սիացին իր մայրաքաղաքը կոչում է Պառի (թեև գրում է Paris), ռուսերենում դա Պարիժ է դառնում, հայերենում՝ Փարիզ։ Նույն գետը ռուսը կոչում է Դունայ, հունգարը՝ Դունա, բուլղարը՝ Դունավ, հայը՝ Դանուբ։ Հնդկաստանի ամենամեծ քաղաքը ռուսերենում հնչում է Калькутта, հայերենում՝ Կալկաթա։ Հունական առասպելաբանության հերոսները հայերենում հնչում են Աքիլլես, Ոդիսևս, Օրփեոս, Հեղինե, ռուսերենում՝ Ахилл, Одисей, Орфей, Елена և այլն։

Այս բոլոր հատուկ անունները տարբեր լեզուներում տարբեր կերպարանք են առնում փոխառու լեզվի տառադարձության օրենքներով։ Մի դեպքում հիմք է ընդունվում հատուկ անվան գրության ձևը, մյուս դեպքում՝ արտասանությունը, մի այլ դեպքում և՛ մեկը, և՛ մյուսը։ Ասենք, Փարիզ անվան համար հիմք է ծառայել գրության ձևը։ Նույն ձևով ենք վարվել նաև Մարատ անվան հետ, բայց ֆրանսերեն այդ անունը հնչում է Մառա, թեև գրվում է Marat և ֆրանսիացին կարող է նույնիսկ զարմանալ, որ Մարատն իրենց Մառա անունն է։ Մինչդեռ ֆրանսիական նշանավոր նկարիչներ Մոնեին, Մանեին, Կուրբեին, Ռենուարին, Դեգային մենք այդպես էլ կոչում ենք՝ հիմք ընդունելով արտասանության և ոչ թե գրության ձևը (Monet, Manet, Courbet, Renoir, Degas)։

Եթե դուք կարդաք Նեվտոն, կարո՞ղ եք կռահել, թե դա Նյուտոն անունն է։ Հազիվ թե։ Մինչդեռ ժամանակին այդպես է գրել Լոմոնոսովը, հիմք ընդունելով Newton գրության ձևը, իսկ հետագայում այդ անունը վերադարձել է արտասանության ձևին։

Գրության ձևին ստրկանալու դեպքում մենք Շեքսպիրին մոտավորապես Շեքեսպեառե պիտի կոչեինք (Shakespeare), մինչդեռ գրում և ասում ենք անգլիական գրությունից հեռու և արտասանությանը մոտ ձևով։

Թվում է, թե՞ խնդիրը հստակ է այսև, տառադարձության մեջ պետք է հետևել արտասանության ձևին։ Պարզվում է՝ ո՛չ բոլոր դեպքերում։ Միայն արտասանությանը հետևելու դեպքում մենք պետք է ոչ թե Վաշինգտոն ասեինք ու գրեինք, այլ Ուաշինգթըն, որ խորթ է մեր լեզվի հնչյունական համակարգին։

Ուրեմն, օտար անունների տառադարձման մեջ ամենից կարևորն այն է, որ դրանք ներդաշնակեն մեր լեզվին, մեր լեզվի հնչյունակազմության օրենքներին։ Ըստ որում, չպետք է մոռանալ, որ մեր լեզվի հնչյունական համակարգը բազմականաչափ հարուստ է և, ասենք, եթե վրացերեն գրվում և արտասանվում է Ծղալտուբո, Ծղնեթ, Ղիփիանի, Ճիլայա, մենք այդ հատուկ անունները այդպես էլ պետք է գրենք և ոչ թե դրանք Ցխալտուբո, Ցղնեթ, Կիպիանի, Չիլայա դարձնենք։ Ուրիշ բան, որ հայերենում Սուխում կամ Բաթում պիտի գրել և ոչ թե Սուխումի կամ Բաթումի։ Մեր փակ վանկանի լեզվի օրինաչափությամբ վերջին ձայնավորները ազվում են ճիշտ այնպես, ինչպես վրացերեն բաց վանկանի լեզվում ձայնավորներն ավելանում են հայկական հատուկ անուններին՝ Երևանի՛, Գորիսի՛, Հակոբյանի՛ և այլն։

Ի՞նչ նպատակ է հետապնդում մեր այս զրույցը։ Տառադարձություն կոչ-

վող չափազանց բարդ և հետաքրքիր երևույթին ձեզ ծանոթացնելու նպատակը: Բայց ոչ միայն դա: Շատ ավելի կարևոր է այս գրույցի մյուս՝ գործնական նպատակը: Այն, որ պետք է իմանալ, թե օտարամուտ հատուկ անունները ինչպես են հնչում հայերենում, իմանալ և չասել Սեմիրամիդա, գիտենալով, որ դա մեր Շամիրամն է, չասել Գերկուլես, Արտեմիդա, Ֆեմիդա, Սիզիֆ, Պրոմեթեյ, Աֆրոդիտա, Պերսեֆոնա, Աֆինա-Պալլադա, գիտենալով, որ հայերեն այդ անունները դարեր ի վեր, դեռ միջնադարից հնչում են Հերկուլես, Արտեմիս, Թեմիս, Սիզիփոս, Պրոմեթևս, Աֆրոդիտե, Պերսեփոնե, Աթենաս-Պալլաս և այլն:

Տառադարձության մասին գաղափար կազմելով, դուք ի վիճակի կլինեք հատուկ անունները ճիշտ գործածել նաև այն դեպքերում, երբ դրանք վերաբերում են ուրիշ ժողովուրդների: Ահա, օրինակ, ձեզ լավ ծանոթ է Մարգարիտ անունը: Այդպես գրում և արտասանում ենք հայերեն: Ռուսերենն այդ անվանն ավելացնում է ա հնչյունը՝ Մարգարիտա: Անգլիացիներն այդ անունն արտասանում են իրենց լեզվին հարազատ ձևով՝ Մարգրեթ: Մենք ևս այդ տարբերությունները պետք է պահպանենք՝ նայած որ ժողովրդի Մարգարիտին է վերաբերում խոսքը:

Առհասարակ պետք է ձգտենք ամեն մի ժողովրդի հատուկ անուն գրել և արտասանել այնպես, ինչպես ընդունված է, այդ ժողովրդի մեջ՝ մնալով, սակայն, մեր լեզվում հաստատված ավանդական ձևերի և հնչյունային համակարգի սահմաններում:

# ԻՆՉ ԴԱՌՆԱԼ

Ամեն անգամ, երբ ավարտվում է ուսումնական տարին, թերթերում «Ո՞ւր գնալ սովորելու» խորագրի տակ տպագրվում են բազմաթիվ հայտարարություններ: Բայց ապագա մասնագիտություն ընտրելը հայտարարություն կարդալով չեն որոշում, այստեղ սխալվել չի կարելի: Հաճախ մասնագիտության ճիշտ ընտրությունից է կախված՝ մարդ երջանիկ կլինի՞, թե՞ ոչ: Այդ պատճառով շատ կարևոր է, որ մինչև դպրոցն ավարտելը ինքդ քեզ համար պարզես քո նախասիրությունները: Այս դժվարին հարցը մայրաքաղաքի № 46 դպրոցում ահա ինչպիսի լուծում է գտել: Արդեն 2-րդ տարին է, աշխատանքի ուսուցման, գծագրության և տնարարության ուսուցիչների ջանքերով ստեղծվել է Մասնագիտության կողմնորոշման կաբինետ: Ուզում ես խառա՞տ դառնալ, քիմիագո՞րծ, բժի՞շկ, մանածագո՞րծ, թե՞ շինարար: Մեկը մեկից տարբեր ու հետաքրքիր մասնագիտությունների մասին է պատմում կաբինետում բացված հարուստ ցուցահանդեսը: Ցուցահանդեսին սիրով են իրենց արտադրանմուշներից տրամադրել ավտոպահեստամասերի, էլեկտրաապարատների, ռետինատեխնիկական, նուրբ բրդյա գործվածքների, մարմարի, գինու և այլ գործարաններն ու կոմբինատները: Բազմազան է ցուցահանդեսի տնարարության բաժինը: Այստեղ կարելի է ծանոթանալ ձևելու, կարելու գաղտնիքներին, նկարների և նրանց տակ եղած բացատրությունների շնորհիվ՝ տիրապետել խոհարարական աշխատանքների հմտություններին, սովորել ասեղնագործել և այլն:





«Պատրաստիր ինքդ» ցուցանակի տակ դրված են աշակերտների ձեռքերով պատրաստված էլեկտրական աղոց, վերամբարձ կռունկի գործող մոդել, շենքերի մակետներ, փականագործական գործիքներ և այլն: Կաբինետում իր նկարչական ցուցահանդեսը նա է բացել 5-րդ դասարանցի Սամվել Իսրայելյանը:

# ՎԵՐՋԻՆ ԶԱՆԳ

№ 46 դպրոցի 8-րդ դասարանցիների ողջերթի խոսքը, ուղղած շրջանավարտներին.

«Դպրոցական վերջին զանգ: Դու այն հարազատն ես, որի արժեքն ու գինը զգում են բաժանման պահին: Եվ դպրոցական տասը տարիների ընթացքում բազմաթիվ տպավորություններից զատվում ես իբրև մի վերջին ակորդ, որի մեջ գալիք գնացող ուրախության խինդ կա և մանկությունից հեռանալու տխրություն: Երևի դրա համար էլ վերջին զանգը ընդունված է հասունության ղողանջ անվանել:

Վերջին զանգը մի յուրօրինակ քննություն է ավարտական քննություններից առաջ:

Սիրելի տասներորդցիներ, վաղվա մեր կյանքի հրամանատարներ, ուր էլ որ գնաք, սիրով հիշեցեք այն զուլալ ու կենսատու աղբյուրը, որի ակունքից ջուր եք խմել և որը կոչվում է դպրոց»:

... Իսկ վերջին զանգից ու դպրոցն ավարտելուց հետո, շրջանավարտների կապը դպրոցի հետ պահպանելու համար ստեղծվել են հատուկ արկղեր:

# ԱՐԿՂԵՐԸ

Դպրոցի դիրեկտոր ընկեր Աբելյանի առանձնասենյակում խնամքով պատրաստված ու ձևավորված երեք արկղեր կան: Յուրաքանչյուրի վրա գրված է. «Ինչպիսին եմ ուզում ինձ տեսնել 5 տարի հետո»: Արդեն 3-րդ տարին է, շրջանավարտները իրենց ամենանվիրական ցանկություններն ու երազանքներն են գրել ու պահ տվել այս փոքրիկ արկղերին: Երբ լրանա առաջին արկղի 5 տարին, դպրոցում կհավաքվեն արկղի տեր շրջանավարտները ու կբացեն, որպեսզի տեսնեն, թե ինչքանով են կարողացել իրենց երազանքները իրագործել կյանքում:

Երկու տարի հետո բացվելու է առաջին արկղը...

**ՄԽԻԹԱՐ ՈՍԿԱՆՅԱՆ**



Ալլա Տեր-Հակոբյան

# ԼՈՒՍԱՅԻՆ ԿԱԽԱՐԴԸ

(Պիես մեկ արարով, պիոներների համար)

Միկան ու Աշոտը պիոներսենյակում պատի թերթ են պատրաստում:

**ԱՇՈՏ** — Դե, կարծես թե, վերջ:

**ՄԻԿԱ** — Ինչպե՞ս թե, վերջ: Տե՛ս, անկյունում դատարկ տեղ է մնացել, մի ամբողջ քառակուսի դեցիմետր: Պետք է մի բանով լցնել:

**ԱՇՈՏ** — Գիտես ինչ, եթե քանդես, ապա նորից հավաքես, ասենք, հեռուստացույցը կամ ժամացույցը, միշտ ավելորդ մասեր կավելանան: Այդպես է օրենքը: Վախենալու ոչինչ չկա:

**ՄԻԿԱ** — Ի՞նչ կապ ունի հեռուստացույցը: Պատի թերթը դու, կարծում եմ, չես քանդել: Մեզ հանձնարարել են այն լույս ընծայել, ուրեմն պետք է լույս ընծայենք, իսկ մեկ քառակուսի դեցիմետր դատարկությունը սև բիծ կգցի մեր աշխատանքի վրա:

**ԱՇՈՏ** — Սպիտակ բիծ:



**ՄԻԿԱ** — Կարևոր չէ՝ ինչպիսի։ Հին-
ծը՝ բիծ է։

**ԱՇՈՏ** — Արևի վրա էլ բծեր կան։ (Նայում է պատուհանից դուրս)։ Նախ, ես այդ մասին ինչ-որ տեղ կարդացել եմ, և երկրորդ, առանց այդ էլ երևում է։ Նայիր։

**ՄԻԿԱ** — Արևին նայելու ժամանակ չկա։ Շուտով այն մայր կմտնի, իսկ մեր պատի թերթը դեռ պատրաստ չէ։ Դու ավելի լավ է մտածես, թե ինչով լցնենք դատարկ տեղը։

**ԱՇՈՏ** — Գուցե ինչ-որ բան նկարե՞նք։

**ՄԻԿԱ** — Ի՞նչ։

**ԱՇՈՏ** — Դե, ասենք, ծաղիկ։ Կամ էլ շուն։

**ՄԻԿԱ** (գոռալով) — Իսկ ինչու՞ շուն։

**ԱՇՈՏ** (հանգիստ) — Որովհետև ես նրանց սիրում եմ։

**ՄԻԿԱ** (անհույս) — Բայց ի՞նչ կապ ունի շունը մեր պատի թերթի հետ։

**Դռան մոտ հայտնվում է երկնագույն կոստյումով բարձրահասակ, նիհար մի մարդ։**

**ՄԱՐԴ** — Ներեցեք, սա ո՞ր քաղաքն է։

**ԱՇՈՏ** (զարմացած) — Ինչպե՞ս։

**ՄԱՐԴ** — Ես հարցրեցի, թե սա ո՞ր քաղաքն է։

**ՄԻԿԱ** — Դուք ի՞նչ է, լուսնի՞ց եք ընկել։

**ՄԱՐԴ** — Այո, Լուսնից։

**ԱՇՈՏ** (հիացմունքով) — Ինչ հետաքրքի՜ր է։

**ՄԻԿԱ** (համարյա մեքենայորեն) — Դուք ուրեմն, սելենի՞տ եք։

**ՄԱՐԴ** — Ուրեմն՝ սելենիտ եմ։

**ԱՇՈՏ** (կամաց հարցնում է Միկային) — Ի՞նչ է նշանակում սելենիտ։

**ՄԻԿԱ** — Լուսնի աբորիգենը։

**ԱՇՈՏ** — Իսկ ի՞նչ է աբորիգեն։

**ՄԻԿԱ** (գրգռված) — Բնիկ։ Ավելի շատ պիտի կարդաս։

**ԱՇՈՏ** (սելենիտին) — Դուք տիեզերանավո՞վ եք եկել։

**ՄԻԿԱ** — Մի՞թե պարզ չէ, որ այս մարդը հեքիաթից է։ Իսկ հեքիաթներում տեխնիկան կանգ է առել թռչող գորգերի վրա։ (Դառնալով սելենիտին)։ Դուք թռչող գորգով եք եկել, ճի՞շտ է։

**ՍԵԼԵՆԻՏ** — Ոչ մի նման բան։ Առանց որևէ գորգի։ Ես Լուսնից Երկիր եմ փոխադրվել կամքի ուժով։

**ԱՇՈՏ** — Ինչ հետաքրքի՜ր է։ Ա՜յ դա կամք է։

**ՄԻԿԱ** — Հա չէ, քեզ պես։ Քո կամքի ուժը չի բավարարում նույնիսկ դասերդ սովորելու համար։

**ԱՇՈՏ** — Ինձ մի խայտառակիր հարգարժան հյուրի առաջ։ Ես, գուցե, լրիվ կփոխվեմ... երկուշաբթվանից։

**ՄԻԿԱ** — Ո՞ր թվականի և ո՞ր ամսի։

**ԱՇՈՏ** — Քո գործը չէ։

**ՍԵԼԵՆԻՏ** — Պետք չէ վիճել, տղաներ։ Դուք այդպես էլ չպատասխանեցիք թե սա որ քաղաքն է։

**ԱՇՈՏ** — Երևանը, իսկ ի՞նչ կա որ։

**ՍԵԼԵՆԻՏ** (ծոցատետրում ինչ-որ բան է գրում) — Հիանալի է։ Ես կամաց-կամաց ծանոթանում եմ Երկրի աշխարհագրությանը։

**ՄԻԿԱ** (պայծառացած) — Գտա՜։ Ես հիմա ձեզնից հարցազրույց կվերցնեմ մեր պատի թերթի համար։ Վերնագիրը կլինի. «Երկնային հյուրը»։

**ԱՇՈՏ** (ցածրաձայն) — Ի՞նչ է նշանակում հարցազրույց:

**ՄԻԿԱ** — Թերթերում տպված հարցուպատասխանները, դմբո՛... (դառնալով սելենիտին) և այսպես, հարց առաջին. Դուք որտեղի՞ց գիտեք հայերեն լեզուն:

**ՍԵԼԵՆԻՏ** — Իսկ ես պոլիգլոտ եմ: Ես հատուկ դպրոցում եմ սովորել:

**ԱՇՈՏ** (ցածրաձայն) — Իսկ ի՞նչ է պոլիգլոտ:

**ՄԻԿԱ** (չղային) — Մարդ, որը շատ լեզուներ գիտի... (սելենիտին) ուրեմն դուք հատուկ դպրոցո՞ւմ եք սովորել:

**ՍԵԼԵՆԻՏ** — Այո:

**ԱՇՈՏ** (զգուշացած) — Իսկ դուք, պատահաբար, լրտես չե՞ք:

**ՍԵԼԵՆԻՏ** — Ոչ, ես պարզապես կախարդ եմ:

**ՄԻԿԱ** — Լուսնայի՞ն:

**ՍԵԼԵՆԻՏ** — Լուսնային:

**ԱՇՈՏ** — Ինչ հետաքրքի՜ր է: Մի ֆոկուս ցույց տվեք:

**ՄԻԿԱ** — Նա ուզում էր ասել՝ հըրաշք գործեք:

**ՍԵԼԵՆԻՏ**— Սա շատ արևոտ սենյակ է : Իսկ ես արևի լույսի տակ զըրկվում եմ իմ շնորհքից:

**ԱՇՈՏ** (հիասթափված) — Ուրեմն ոչինչ չե՞ք կարող անել:

**ՍԵԼԵՆԻՏ** — Բացարձակապես ոչինչ:

**ՄԻԿԱ** — Իսկ եթե այսպե՛ս... (քաշում է վարագույրները. այժմ սենյակում կիսախավար է):

**ԱՇՈՏ** — Եվ այսպե՛ս... (դռնից դուրս է հրում Միկային, ինքն էլ նետվում ետևից և դուռը դրսից բանալիով փակում: Սելենիտը պիոներսենյակում մնում է մենակ):

**Մի վայրկյան անց սելենիտը հանկարծ հայտնվում է դռան մյուս կողմում, չնայած դուռը առաջվա նման կողպված է:**

**ՄԻԿԱ** (հմայված) — Դուք ինչպե՞ս հայտնվեցիք այստեղ:

**ՍԵԼԵՆԻՏ** — Շատ հասարակ: Դու քաշեցիր վարագույրները, արևի լույսը դադարեց սենյակ թափանցել, և ես նորից ձեռք բերեցի իմ կախարդական ուժը. մթության մեջ ես ամենազոր եմ:

**ԱՇՈՏ** — Այ սա անպարտությու՛ն է, ինչպես կրկեսում:

**ՄԻԿԱ** — Մի վիրավորիր ընկեր սելենիտին: Կրկեսում իրոք անպարտություն է՝ խաբեություն, իսկ այստեղ՝ իսկական կախարդանք: (Սելենիտին) Հարց երկրորդ. երկա՞ր ժամանակով եք ժամանել մեզ մոտ՝ Երկիր:

**ՍԵԼԵՆԻՏ** — Երկրային ժամանակով՝ մոտ երեսուն-քառասուն րոպեով:

**ՄԻԿԱ** — Ի՞նչ: Բայց դուք ոչինչ չեք հասցնի տեսնել, իսկ երկրի վրա այնքան հետաքրքիր երկրներ, քաղաքներ, ծովեր ու անտառներ կան: Ավելի երկար մնացեք, տեսեք:

**ՍԵԼԵՆԻՏ** — Շնորհակալ եմ, մի ուրիշ անգամ...

**ԱՇՈՏ** — Մնացեք գոնե մի շաբաթ: Մեր պիոներջոկատավարն էլ հենց հիվանդացել է, նրան կփոխարինեք: Էքսկուրսիաներ կկազմակերպեք լուսնային գիշերներին և կպատմեք Լուսնի մասին...

**ՍԵԼԵՆԻՏ** — Դա հնարավոր չէ: Բավական է, որ լուսինը դուրս գա, ես կը-

հիվանդանամ նոսթալգիայով, իսկ դա մահացու հիվանդություն է:

**ԱՇՈՏ** (Միկային) — Ի՞նչ բան է նոսթալգիան:

**ՄԻԿԱ** — Հայրենիքի կարոտ: Դե լռի՛ր: (Դիմելով սելենիտին) Հարց երրորդ. դուք այստեղ եք ժամանել տուրիստակա՞ն նպատառումներով:

**ՍԵԼԵՆԻՏ** — Ոչ բոլորովին: Ես կընցանկանայի երկրացիների համար մի հրաշք գործել, որ իրենք չեն կարող: Ուզում եմ այստեղ ինձ բարի խոսքով հիշեն: Գուցե, դուք կհուշեք, թե ինչպիսի հրաշք լավ կլինի որ գործեմ:

**Աշոտն ու Միկան տարակուսանքով իրար են նայում:**

**ԱՇՈՏ** — Իսկ դուք միայն մե՞կ հրաշք կարող եք գործել:

**ՍԵԼԵՆԻՏ** — Միայն մեկը: Նախ՝ ես սահմանափակված եմ ժամանակի մեջ, իսկ երկրորդ՝ ամեն մի հրաշք էներգիայի ծախսում է պահանջում, իսկ այն ինձ մոտ սպառվելու վրա է, ես դեռ պետք է տուն թռչեմ, ավելի ճիշտ, փոխադրվեմ կամքի ուժով:

**ԱՇՈՏ** (ոգևորված) — Այնպես արեք, որ ուսուցիչները բոլորին միշտ միայն հինգեր նշանակեն:

**ՍԵԼԵՆԻՏ** — Հիմարություն: Այդ դեպքում մոտ ապագայում ամբողջ երկրով մեկ կհանդիպես տգետ և անկիրթ գերազանցիկների:

**ՄԻԿԱ** — Արեք այնպես, որ մարդիկ շատ-շատ բաներ իմանան:

**ՍԵԼԵՆԻՏ** — Կարդացեք, սովորեք, ուսումնասիրեք և շատ բան կիմանաք: Այստեղ ոչ մի հրաշք էլ չկա:

**ՄԻԿԱ** — Այդ դեպքում այնպես արեք, որ Երկրի բնակիչները հաղթեն այնպիսի ահավոր հիվանդություններ, ինչպիսիք են քաղցկեղը, ինֆարկտը...

**ՍԵԼԵՆԻՏ** — Դա շուտով, շատ շուտով կանհի ձեր երկրային բժշկությունը... Մտածե՛ք, մտածե՛ք տղաներ, իմ ժամանակը սպառվում է:

**ԱՇՈՏ** (բղավելով) — Արեք այնպես, որ երբեք պատերազմ չլինի:

**ՍԵԼԵՆԻՏ** — Դուք էլ դա կարող եք անել, մարդիկ: Երկրով մեկ տարածեք «խաղաղություն» բառը, տարածեք ձեր գործերով, ելույթներով, գրքերով, կրեք ձեր սրտերում և կլինի խաղաղություն:

**ԱՇՈՏ**— Ուրեմն, դուք ոչինչ չե՞ք կարող անել:

**ՍԵԼԵՆԻՏ** — Ինձ արդեն վայրկյաններ են մնում, ես հիմա կանհետանամ...

**ՄԻԿԱ** — Դե, թեկուզ ձեր ինքնագիրը թողեք մեր պատի թերթում:

**ՍԵԼԵՆԻՏ** — Խնդրեմ... (Ինչ-որ բան է գրում շտապ-շտապ, անհետանում է):

**ՄԻԿԱ, ԱՇՈՏ** (միասին կարդում են) — **ՄԱՐԴԸ ԱՄԵՆ ԻՆՉ ԿԱՐՈՂ Է:**

**ԱՇՈՏ** (հիասթափված) — Իսկ դեռ ասում էր. «Ես կախա՛րդ եմ, ես Լուսնի՛ց եմ եկել, ես ուզում եմ ձեզ համար հրաշքնե՛ր գործել...»: Շարքային խաբեբա:

**ՄԻԿԱ** (մտածկոտ) — Մարդը ամեն ինչ կարող է... Գիտե՞ս, գուցե և նա ճիշտ է...

**(ՎԱՐԱԳՈՒՅՐ)**

Ճանճը ուրախ թռա՜վ, երգե՜ց,
Մեկ էլ ընկավ ոստայնի մեջ.
— Մի՛ վշտանա, քեզ մի՛ տանջի,
Այդ քեզ բնավ սազական չի:
Էլ ի՞նչ քավոր ու սանամեր,
Որ մեկմեկու տուն չայցելեն...
Ու սարդը ճոխ սեղան բացեց,
Հազար բարիք բերեց-լցրեց,
Ճանճը կերա՜վ, խմեց՝ հարբեց,
Ապա երգեց, պարեց, երգեց,
Հետո լիքը բաժակն առավ
Ու իր քավոր սարդին դառավ,
Գովեց նրան, նրա ցեղին,
Օրհնեց մեկ-մեկ՝ տեղը-տեղին...

# ՄՆԱՑԱԿԱՆ ԹԱՐՅԱՆ

# ՍԱՐԴՆ ՈՒ ՃԱՆՃԸ

(ԶՐՈՒՅՑ)

Հրաժեշտի ժամը հասավ,
Սարդը դարձավ, ճանճին ասավ.
— Տու՞ն ես գնում՝ ճամփադ բարի,
Թող չդիպչի ոտքդ քարի:
Սանիկներիս բարևս տար՝
Բարեկամ ենք, ոչ թե օտար.
Էս կապոցն էլ՝ տար, սանամեր,
Ինձնից որպես համեստ նվեր....
Մեկ էլ որ գաս՝
Մենակ չգաս...
Ճանճը երբ տուն եկավ, հասավ,
Իր ձագերին կանչեց, ասավ.
— Հարազատներ իմ սիրելի,
Մեղք ենք գործել աններելի.
Սարդի նման բարեկամին
Համարել ենք մեր թշնամին:
Սուտ է, սուտ է այդ բոլորը,
Ես հյուր էի ամբողջ օրը.
Այնքան պատի՜վ, այնքան հարգա՜նք,
Որ իմանաք՝
Կզարմանաք:
Դեռ ինձ հետ էլ, որպես նվեր,
Ձեզ համար, ա՛յ, ինչ է դրել:
Փոքրիկները ուրախացան,
Ուրախացած իրար անցան.
— Մենք ուզում ենք նրան տեսնել,
Հյուր ենք ուզում նրան լինել:

Այդ օրվանից մինչև այսօր,
Ճանճերը՝ մեծ ու թե փոքր,
Սարդի տունը հյուր են գնում,
Գնում են ու... ետ չեն դառնում:

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Ինչպե՞ս սովորել արվեստը հասկանալ, ինչպե՞ս հաղթահարել դժվարությունը, անհասկանալիությունը:

Ուզում եմ ձեզ հետ, սիրելի ընթերցողներ, բաժանել իմ մի քանի մտքերը: Խորհուրդնե՞ր են դրանք, օրենքնե՞ր են: Հազիվ թե: Ավելի ճիշտ՝ նկատած բաներ են, որոնք, ով գիտե, գուցե ձեզ պետք գան:

ձամբ ընտրելու թե ում դուր գա, ում՝ ոչ:

Պատահական չէ, որ խոսքս սկսեցի այս պատմությամբ: Դուք ուզում եք սովորել հասկանալ արվեստը: Բայց նախ հարկավոր է իմանալ, որ անկարելի է հասկանալ առանց հարգելու:

Ինչ որ մի ժամանակ մի փիլիսոփա ասել է. դիտողը պետք է հարգալից սպասի, որ նկարն ինքը դիտողի ուշա-




Սկսեմ մի զվարճալի դեպքից: Տարիներ առաջ, Մոսկվայի Պուշկինի անվան կերպարվեստի թանգարանում բացվել էր «Դրեզդենյան պատկերասրահի գլուխգործոցները» ցուցահանդեսը: Ռաֆայելի «Սիքստինյան Աստվածամոր» նկարի առաջ խմբվել էր մեծ բազմություն. նայում էին, իրար մեջ խոսում... Անսպասելի բարձր, ամպրոպի պես ճայթեց մեկի վրդովված ձայնը.

— Չէ, ես մի բան չեմ հասկանում... հավաքվել են իրար գլխի, աչքերը չռել այդ նկարին... իսկ դա ինչ է որ... ոտաբոբիկ մի կնիկ, ցնցոտիների մեջ:

— Երիտասարդ,— ընդհատեց նրան ճեր տարիք առած փայլուն դերասանուհի Ֆ. Գ. Ռանևսկայան,— այդ տիկինը այնքան երկա՞ր տարիներ գերել է մարդկության լավագույն մասի մտքերը, որ լիապես իրավունք ունի ինքն ան-

դրությունը հրավիրի իր վրա և խոսի հետը:

Ռուս նշանավոր գրող Ա. Ռեմիզովը ունի մի փոքրիկ գրքույկ, որ կոչվում է «Ներկված մոութ»: Այդ գրքույկում մի սքանչելի հոդված կա՝ «Մարդու մասին, աստղերի և խոզի»: Այնտեղ ասված մի քանի մտքեր հարմար են գալիս մեր այս զրույցին:

«Մարդ են դառնում մեծագույն աշխատանքով:

Նայել և տեսնելը դժվար բան է: Ինչպես ամեն մի գիտություն, տեսածը՝ տեսնելը և լսածը՝ լսելը նույնպես ծխախոտ փստացնելու պես ինքն իրեն չի տրվում: Նայել և տեսնել:

Ականջ դնել և ականջ անել: Տեսնել աստղերը, երաժշտություն լսելը մեծ երջանկություն է: Բայց որպեսզի սովորես գիրք կարդալ և կարդալիս մոռա-

նաս աշխարհում ամեն ինչ, հարկավոր է մեծ աշխատանք: Եվ որպեսզի կանգնես նկարի առջև, աշխարհը մոռացած, հարկավոր է մեծ աշխատանք»:

«Թույլ մի տվեք ձեր հոգուն ծուլության մատնվել»:

«... Համբերատար դիտեցեք գույները, գեղանկարը, ուսումնասիրեք նրա օրենքները, և դուք, վերջիվերջո, ուրախություն կգտնեք դրանում»:

Դիտել նկարը՝ չի նշանակում նայել փայլքին, դեմքին, ստվերներին: Դա մի երկխոսություն է, և այդ երկխոսությունը հետաքրքիր է դառնում, երբ դուք պատրաստ եք խոսակցության, երբ դուք հասկանում եք այն լեզուն, որով ձեզ հետ խոսում են:

Արվեստի գործի վերլուծությունը բարդ բան է: Բայց դա անհրաժեշտ է, եթե դուք ուզում եք արվեստը հասկանալ: Պատմությունը կարող է օգնել ըմբռնելու առանձին ժամանակահատվածների ներքին իմաստը: Բայց այդ չի նշանակում, թե արվեստի մեջ մեզ զբաղեցնում է միայն կյանքի անմիջական արտացոլումը: Կարևորը հոգու պատմությունն է, հասարակության տվյալ ժամանակի ստեղծագործական կյանքը: Դրանում մեզ կարող են օգնել նկարչի սևագրությունները, ճեպանկարները, էսքիզները, օրագրերը:

Սակայն պատմական փաստերը, նկարչի կենսագրությունը, նրա աշխատանքը, այս բոլորը նախաքայլ է շքամուտքին մոտենալու, ոչ ավելի: Արվեստը ճանաչելու համար պահանջվում է ևս մեկ քայլ՝ խիզախել: Անհրաժեշտ են ներքին ջանքեր հեռանալու համար, կտրվելու համար կանխակալ մտայնությունից: Անհրաժեշտ են գիտելիքներ, հանձնվելու համար անմիջական տպավորությանը, սուզվելու կերպարվեստի մեջ... Կօգնի մեզ նաև մեր բնազդը: Եթե վերջինս մեզ լքի, եթե մենք գիտակցորեն բթացնենք և խլացնենք մեր զգացումները, զգացողությունը, եթե ծայրաստիճան զսպենք դրանք, արվեստը կհեռանա մեզանից, ձեռքի մեջ կմնա միայն կտավի մի կտոր՝ շրջանակի մեջ ցուցադրված, նկարչի հղացման իրագործումի հետքն էլ չի մնա:

Դուք կառարկեք, ասելով, այդ դեպքում էլ ինչի՞ համար է գիտելիքը, վերլուծելու կարողությունը: Արվեստի վերլուծությունը, իբրև կենդանի օրգանիզմի տարանջատում, յուրատեսակ հերձում է նշանակում: Բայց դա միաժամանակ ստեղծագործություն է, ավելի ճիշտ՝ ստեղծագործական համագործակցություն: Մենք ասես հետևում ենք արվեստագետին: Դիտելով նկարը, բացահայտելով նրա մեջ նորը և նոր արժեքներ, որոնում ենք ճշմարտություն, բայց պետք է գործադրել ոչ քիչ ջանքեր, որպեսզի նկարը մեզանից չհեռանա:

Իմացության ձեռքբերումը ստեղծագործական պրոցես է:

Հույն մեծ փիլիսոփա Սոկրատեսը կախաղան հանվելու նախօրեին խնդրել է մի երաժշտի՝ սովորեցնել իրեն տավիղի վրա նվագել մի երգ:

— Ինչի՞դ է պետք,— հարցնում է երաժիշտը,— մեկ է՝ մեռնելու ես:

— Որպեսզի մինչև մեռնելս իմանամ այդ,— պատասխանել է Սոկրատեսը:

Ահա մեծագույն իմաստություններից, որ ես գիտեմ: Ուզում եմ տալ ձեզ վերջին, գուցե միակ խորհուրդս՝ կամեցեք, սովորեցեք կամենալ:

*ՄԻԽԱՅԻԼ ԱԼՊԱՏՈՎ*
*ՍՍՀՄ գեղարվեստի ակադեմիայի իսկական անդամ*




**ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ**

---

— Իմ բալիկներ,
Սիրունիկներ,
Պստիկ քաջեր,
Ոսկեչանչեր,—
Ասաց մեղուն իր ձագերին,—
Դե, մոտ եկեք ծաղիկներին,
Բեռնավորվենք քաղցր բերքով
Ու տուն դառնանք
Պապենական մեր հին երգով...—
Բայց ձագուկներն իրենց համար

Հաջորդ օրն էլ մայրիկ մեղուն
Էլի նեկտար էր հավաքում,
Ջագուկներից ծույլերն էլի
Խաղում էին ու աղմկում:
Սակայն այդ օրն երեկոյան,
Ջագուկները երբ տուն եկան,
Ով որ եկ էր եկել դատարկ,
Չթողեցին մտնի փեթակ:
Եվ փեթակի մուտքին պահակ
Մեղուների մի ողջ բանակ
Հալածեցին անբաններին:
Է՜հ, ձագուկներն ի՞նչ անեին,
Ցրտին, քամուն, մթան ահից
Դողդողացին ամբողջ գիշեր,
Թփերի տակ, խոտերի մեջ,
Մինչև մի կերպ լույսը բացվեց...

Եվ ասեմ ձեզ, այդ օրվանից
Մեղուները ամեն տեսակ,
Թե մեծ
Եվ թե փոքրահասակ,
Աշխատում են առավոտից մինչ
իրիկուն
Ու երգելով դառնում են տուն...
Երջանիկ են, ապրում են, կան
Եվ պայծառ է նրանց ներկան...

Իմ բալիկներ,
Սիրունիկներ,
Քաղցրիկ քույրեր,
Պստիկ այրեր,
Ամեն մեկս էլ մեր գործն ունենք,
...ունենք,

[illegible] պար,
Խաղում էին, վիճում, ճչում
Կամ թավալվում խոտերի մեջ
Ու քրքջում...
— Իմ բալիկներ,
Սիրունիկներ,—
Կանչեց նրանց մայրիկ մեղուն,—
Օրն ավարտվեց,
Գնում ենք տուն:
Բայց թե այսպես,
Թեթև, անտես,
Օրը-օրին
Կանցնի տարին:
Ու թե խաղաք
Դուք շարունակ,
Ձմեռը գա՝
Մենք կունենանք
Դատարկ փեթակ:
Խաղն իր տեղին,
Պարն իր տեղին,
Աշխատանքն է միշտ պահպանել
Մեր հին ցեղին:
Իմ բալիկներ,
Սիրունիկներ,
Պստիկ քաջեր,
Ոսկեչանչեր,
Դուք մեղու եք
Ու մեղվի թոռ
Եվ ոչ թե բոռ...—

Որ մեծանանք,
Որ միշտ լինենք,
Թե չէ այնպես,
Թեթև, անտես,
Օրը-օրին
Կանցնի տարին...
Մեր գործն անենք,
Որ ոչ մի օր չփոշմանենք:
Միշտ հետևենք
Այս երջանիկ բարիներին՝
Մեղուներին...

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



# ԵՐԲ ՎԵՐՋԱՆՈՒՄ Է ԽՈՍՔԸ, ՍԿՍՎՈՒՄ Է ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ

ՍՎԵՏԼԱՆԱ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

## 5. ՀՆԴԿԱՍՏԱՆ

Ավելի քան հինգ հազարամյակների ընթացքում հնդիկ ժողովրդի ստեղծած մշակույթը համաշխարհային քաղաքակրթության ամենաերևելի նվաճումներից է: Նա մոնումենտալ ծեփանկարներով զարդարել է Աջանտի, Բաքխի, Էլորի քարանձավային տաճարների պատերը, կանգնեցրել հիասքանչ կառույցներ՝ պալատներ, տաճարներ ու դամբարաններ:

Հին ժամանակներից հայտնի են փայտից ու փղոսկրից պատրաստված հնդկական գեղարվեստական իրերը, դըրվագազարդված զենքը, ոսկով ասեղնագործությունը: Արմատներով դեպի խոր հնություն է գնում Հնդկաստանի գրականությունը: Նրա առաջին հուշարձանները՝ Վեդայի սուրբ գրքերը, ըստեղծվել են մեր թվարկությունից հազարամյակներ առաջ: Մ. թ. ա. 1-ին հազարամյակում ստեղծվել են բարձրարվեստ էպոսը, համաշխարհային ճանաչում ունեցող պոեմները՝ «Մահաբհարատան» և «Ռամայանան»: Պոեմների առանձին հատվածներ ժամանակին վերածվել են երաժշտության, ծնունդ տալով էպիկական երգերի յուրօրինակ մի ժանրի: Այդ երգերի հեղինակներն ու կատարողներն են համարվում «Կաթհակա» թափառող երգիչ-երգասացները: «Կաթհակա» երգասացների արվեստը ժառանգաբար փոխանցվել է սերնդե սերունդ (ի դեպ նրանք առանձին կաստա են կազմել), և այսօր էլ պահպանվել է էպիկական երգերի կատարման ավանդույթը՝ իր խոսակցականից դեպի երգեցողությունը տանող հաճախակի անցումներով:

Հնդկաստանը օրրան է երաժշտական թատրոնի: Այդ թատրոնում հավասարապես գործածվել են պարն ու մնջախաղը, որոնց հրաշալի տիրապետել են հին հնդկական դերասանները: «Ռամայանայում» տրված են ժողովրդական երաժշտական թատրոնի փողոցային ներկայացումների գունեղ տեսարաններ:

Հնդկաստանում է ըստեղծվել տիկնիկային թատրոնը, որը մուտք գործելով ժողովրդի գեղարվեստական կենցաղը մ. թ. շատ առաջ, ստացել է ոչ միայն բեմական, այլև երաժշտական ձևավորում:

Մ. թ. ա. 1-ին հազարամյակում է հիմնվել «Ջատրա» ժողովրդական

դրամաև (միստերիա֊դիցաբանական թեմանե֊րով), ուր նույնպես մեծ տեղ է հատկացվել երա֊ժըշտությանը:

Հին հնդկական ար֊վեստի հետաքրքրական երևույթներից էր «Ռաս֊լիլա» ժողովրդական խո֊րեոգրաֆիկ (պարային) թատրոնը (ի դեպ «ռաս» նշանակում է շուրջպար, «լիլա»՝ խաղ, ներկայա֊ցում): «Ռասլիլա» թատ֊րոնում, որի թեմատիկան

Անհիշելի ժամանակ֊ներից են հնչում հնդիկ հողագործների, շինա֊րարների, «Հհատյալի» կոչվող՝ նավավարների, մակույկավարների, թիա֊վարների երգերը, հնա֊գույնների թվին են պատ֊կանում եզապաններից, փղապաններից, օձեր սանձահարողների, հո֊վիվների և այլոց երգերը: Քիչ չեն նաև հերոսա֊կան հայրենասիրական երգերը:

կապված, ծագել է հընդ֊կական դասական երա֊ժըշտությունը, որ առա֊վել ծաղկման է հասել մ. թ. ա. 3-րդ, մ. թ. 4—5-րդ դարերում:

Պրոֆեսիոնալ թատրո֊նի, պարի, երգի և գոր֊ծիքային երաժշտության կենտրոն են եղել թագա֊վորների ու ռաջաների պալատները, ուր դասա֊կան թատրոնի ներկայա֊ցումները տրվել են երա֊ժշտության մասնակցու֊



Հնդկական երա֊ժըշտական թատ֊րոնում հավասար տեղ ունեն պարն ու մնջախաղը:

կապված է Կրիշնա աստ֊ծո պաշտամունքի հետ, հիմնականում գործած֊վում էին շուրջպարի եր֊գեր: Թատրոնն ուներ նաև զարգացած նվագա֊խումբ:

Բոլոր ժամանակներում էլ հստակ ներթափան֊ցությամբ են տարբերվել հնդկական քնարական երգերը:

Բանաստեղծության և ու պարին սերտորեն

թյամբ:

Մ թ. 4—6-րդ դարե֊րում է ստեղծվել հնդկա֊կան դասական դրաման:

Իր յուրօրինակ զգաց֊մունքայնությամբ հընդ֊կական երաժշտությունը

տարբերվում է ոչ միայն արևմտյան, այլև արևելյան որոշ ժողովուրդների երաժշտությունից։ Թեև հին հնդկական երաժշտության մեջ պատահում են հստակ ու կուռ ռիթմով, էներգիայով լեցուն եղանակներ, սակայն բնորոշը երկար ու անշտապ ծավալվող, խոր մտորումներով լի մեղեդիներն են, որոնք լսելիս թվում է, ժամանակն էլ, զմայլված, դադարեցնում է իր վազքը։ Հին Հնդկաստանում, ինչպես և Միջագետքում մեծ նշանակություն է տրվել երաժշտության հուզական բովանդակությանը։ Ամեն մի ինտոնացիա, նույնիսկ առանձին հնչյուն («նադա») համարվել են որոշակի զգացմունքի կամ բնության երևույթի կերպարի՝ բույսի, ծաղկի, թռչնի, հողմի, արևի արտահայտիչ։ Դա երաժշտության մի ամբողջ փիլիսոփայություն է եղել, որ դարերի ընթացքում ծնել է մեղեդային և ռիթմիկ դարձվածքների անթիվ բազմազանություն։ Բնության երևույթների, կյանքի, կենցաղի մասին հնդիկների ունեցած գեղարվեստական պատկերացումները էլ ավելի խոր են կապվել ռագայի (երաժշտության տարատեսակ, բառացիորեն նշանակում է արթնացրած զգացմունք) մեղեդային կերպարների հետ։ Ռագան աչքի է ընկնում ինտոնացիոն, ռիթմիկ և զարդարանքային արտակարգ ճոխությամբ։ Նրա հիմքում որոշակի կերպար-մեղեդի է, որը ստանում է իր հետագա զարգացումը։ Դասական ռագան հաճախ երկու կամ եռամաս է, երբեմն՝ ավելին։ Նրա կատարումը հաճախ ժամեր է տևում։ Դեռ հնում ռագային մարդու հոգեվիճակի, մտքերի, զգացմունքների վրա ազդելու հատկություն է վերագրվել։ Դարերի ընթացքում կանոններ են մշակվել («շաստրա»), համաձայն որոնց, այս կամ այն ռագայի կատարումը (իսկ հնդկական երաժշտության մեջ հսկայական է նրանց քանակը) կապված է եղել տարվա եղանակի, օրվա, գիշերվա, ցերեկվա որոշակի ժամանակի հետ։ Հին հնդկական ռագայի հոյակապ օրինակներ են պահպանվել։ Առավել գեղեցիկներից է «Բհաիրավան»։

Արտակարգ խորաստւզվածությունն է հընդկական կատարողական ոճի գլխավոր հատկանիշը։ Դեռ հնում երգիչները, երբեմն նաև գործիքային կատարողները, երգում ու նվագում էին փակ աչքերով, որպեսզի արտաքին տպավորությունները չցրեն ստեղծված կերպարի պատրանքը։

Օգտագործել են լարային, փողային, հարվածային գործիքների մի ամբողջ շարք։ Հարվածային գործիքներից առավել տարածված էին թմբուկները, այդ թվում և մեզ համար ձևով անսովոր իլիկանման մրիդանգամներն ու չափազանց փոքր տաբլաները (խփում էին ափերով)։

Ամենահին փողային գործիքներից էին «շանքղա» շեփորը, «շրինգա» փողը, գրական աղբյուրներում առավել հաճախ հիշատակվող սրինգները։

Մինչ այժմ պահպանվել է աղեղնավոր լարային «սարանգի» գործիքը, որի հնչեղությունը տեմբրով մոտ է մարդկային ձայնին։ Հնդկաստանում ամենասիրվածը, թերևս, կամիթային վին գործիքն է, որ հազարամյակների կյանք ունի և որի ստեղծումը վերագրվում է հայտնի երաժիշտ, իմաստուն Նարադին։

Հին Հնդկաստանը ըստեղծել է սեփական նոտագրական սիստեմ։ Այն, ենթարկվելով որոշակի փոփոխությունների, գործում է մինչև այժմ։



Ե. ԳՈՒԼՅԱՆՑ

# ԲՈԼՈՐԻ ՀԱՄԱՐ

*Նկ. ԱՐԱ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ*

Մի անգամ, Ռուսիո երիտասարդ Պետրոս թագավորը արտասահմանում էր գտնըվում, և ազնվատոհմ կուրֆյուրստուհիները (հաննովերյան ու բրանդենբուրգյան) նրա պատվին ընթրիք կազմակերպեցին: Թեև Պետրոսը գերազանց էր տիրապետում գերմաներենին, լույսի առատությունից, թնդացող երաժշտությունից ու կանանց ազատ վարմունքից շփոթված էր թվում: Սակայն, շուտով հաղթահարելով շփոթմունքը, լեզվին ազատություն տվեց և խոսքի պարզությամբ ու անկեղծությամբ բոլորի սրտերը գրավեց: Իսկ պարելիս զարմացրեց քայլքի թեթևությամբ, թեև հաղթահասակ էր ու թիկնեղ…

— Է՜, հեռ Պիտեր, դուք այնքան լա՜վ եք պարում: Անշուշտ երաժշտություն սիրում եք:

— Ո՛չ, թե՛ երաժշտություն, թե՛ որսորդություն չեմ սիրում,— անկեղծորեն խոստովանեց թագավորը:— Իմ գործը նավաշինարարությունն է: Ես օգտակար աշխատանք եմ սիրում:

Ընթրիքին իտալական երգիչներ էին հրավիրված: Պետրոսը նրանց նկատելի հաճույքով էր լսում, իսկ երբ երգեցողությունն ավարտվեց, իր ձեռքով ամեն մեկին մի բաժակ գինի հրամցրեց:

— Օ՜, հեռ Պիտեր, ձեզ դու՞ր եկավ,— ճռվողեցին տիկինները:

— Լավ են երգում, բայց նման երաժշտության նկատմամբ ես առանձին սեր չունեմ: Այլ բան է եկեղեցական երաժշտությունը, կամ թմբուկը: Հե՜յ, Ալեքսա՜շկա,— կանչեց նա Մենշիկովին,— թմբուկը բեր:

Մենշիկովն իսկույն երաժիշտների մոտ նետվեց, առավ թմբուկն ու կոչնակները շրխկացնելով (այնուամենայնիվ գերմանացիներից նուրբ շարժուձև էր սովորել), թագավորին մատուցեց:

Պետրոսը հարմարեցրեց թմբուկը, առավ փայտիկները ու սկսեց հարվածել այնքան վարպետորեն, որ շուրջը հավաքված հյուրերը զարմացած տարուբերում էին գլուխները: Իսկ Պետրոսը, ոչ ոքի վրա ուշադրություն չդարձնելով, մի բարդ կոտորակ էր հնչեցնում:

Ծափեր լսվեցին, բայց թագավորն արդեն սրընթաց դեպի դահլիճի մյուս ծայրն էր գնում, որտեղ պատուհանի մոտ, համեստորեն մի ծովային սպա էր կանգնած: Նրանք գրկախառնվեցին, և Պետրոսն արդեն ոգևորված, թևերը լայնատարած թափահարելով, մեկ մռայլվելով, մեկ ծիծաղկոտ, նրան աշխույժ ինչ-որ բան էր պատմում...

Արտասահմանյան ուղևորությունը Պետրոսին ստիպեց մտորել:

Նա դեռ փոքր էր եղել, երբ վախճանվել էր հայրը՝ Ալեքսեյ Միխայլովիչ թագավորը, բայց հիշում էր նրա թատրոնը: Ճիշտ է, այդ թատրոնը հաճախում էին միայն իրենք՝ թագավորն իր ընտանիքով, նրա մերձավորները ու Մոսկվա այցելող օտարերկրյա հյուրերը:

Պետրոսը վճռեց թատրոն կառուցել «բոլոր դիտել ցանկացողների համար», ամենամարդաշատ հրապարակի վրա: Նրա խոսքը երբեք գործից չէր զատվում: Մտքում դնում էր և իսկույն անում: Աhա և Կարմիր հրապարակի վրա, Կրեմլի կողքին*, ատաղձագործները սկսեցին «թատրոնական փայտաշեն տաճար» կանգնեցնել: Այդ գործի համար Գերմանիայից հրավիրեցին թատերական ձեռնարկու Յոհան Կունստին, դերասանների իր խմբով: Նրա հետ պայմանագիր կնքվեց, որի համաձայն թագավորը պարտավորվում էր հիշյալ Կունստին ու նրա խմբին տարեկան 5000 եֆիմոկ վճարել, դիմացը Կունստը պետք է «ամեն տեսակ խաղերով ու զվարճալիքներով նորին թագավորական մեծությանը հաճոյանար և լիներ բարեհամբույր, պարտավորված ու միշտ պատրաստակամ»: Կունստին «նորին թագավորական մեծության դերասանների տնօրենի» կոչում շնորհվեց:

Առաջին ներկայացումները գերմաներեն էին տրվում և դիտել ցանկացողները սակավ էին: Թագավորի հրամանով՝ ծեծի, տուգանքի ու էլ ավելի խիստ պատիժների սպառնալիքով ընտիպում էին թատրոն հաճախել: Ներկայացումների ժամանակ սաստիկ ձանձրանալով, հաստափոր ծեր բոյարները փնթփնթում էին.

— Մեղա, տեր աստված, գերմանացիների ծամածռությունները մեր ո՞ր մեղքի համար պիտի նայենք:

Թագավորը հրամայեց պիեսները ռուսերեն թարգմանել և ճորտերին դերասանական արվեստ սովորեցնել:

— Նրանց ոչ միայն թատերական արվեստ սովորեցնել, այլև պար ու երաժշտություն,— եռանդուն կարգադրեց նա:

Հիմա էլ բանն աշակերտ գտնելն էր: «Կամավոր ցանկացողներ» չկային. դերասանի արվեստն ու երաժշտի կոչումը այնքան էլ բարձր չէր գնահատվում: Հենց իրենք՝ թագավորը, բանակի հրամանները արձակելիս երաժիշտներին «այլ ստորին անձանց» թվին էր դասում: Ստիպված եղան կարգագրեր հղել զանազան ատյանների. տասը մարդ վերցնել քաղաքապետարանից, երեքը՝ սիբիրյան ատյանից, երկուսը՝ մենաստանների ատյանից: Արվարձաններից՝ մեկին, որ նախկինում հնոցապան էր եղել: Իրենց կամքին հակառակ վերցված աշակերտները ո՞չ եռանդ էին

* Այնտեղ, ուր այժմ Պատմական թանգարանն է:

ցուցաբերում, ո՛չ էլ ընդունակություններ: Պատմաբան Վեբերն այս առիթով գրում էր. «Եթե գեներալի մոտ մի երիտասարդ կամ տարեց մարդ էին բերում, որին պետք էր զինվորական երաժշտություն սովորեցնել, նույնիսկ եթե նա երբեք երաժշտություն չէր լսել և ամենաչնչին ընդունակություններ անգամ չուներ, որոշակի ժամանակով ուսուցչի էին տալիս՝ նրան եկեղեցական երգեցողություն, մենուետներ և այլն սովորեցնելու համար: Իսկ եթե սովորողն այդ ընթացքում հաջողության չէր հասնում, ապա նրան ուղղվելու համար ծեծում էին այնքան, մինչև սովորում էր ու սկսում նվագել»:

Մինչ այս ձևով «կադրեր» էին պատրաստվում, Կունստը քափ ու քրտինք մտած պիեսներ էր հորինում ու խաղում իր թատերախմբով, միաժամանակ բողոքելով.

— Ոչ մի դերասան աշխարհում միանգամայն նոր, մինչ այդ չտեսնված ու չլսված պիեսը չի կարող մի շաբաթում գրել և երեք շաբաթում անգիր անել ու խաղալ:

Ազնվատոհմ ընտանիքների երիտասարդությունը սիրում էր թատերախաղերը.

— Հետաքրքիր են խաղում, շարժումներն էլ դուրեկան են. տղան աղջկա ձեռքն է համբուրում, իսկ սա գեղգեղում է ու գեղգեղում...

Մեծ հաճույքով էին դիտում միջանկյալ տեսարանները (այսպես էին կոչվում գործողությունների միջև ընկած բալետային ինտերմեդիաները): Պարերը բոլորին էին դուր գալիս: Թագավորը երաժիշտներ էր «դուրս գրում» արտասահմանից, իսկ երբ Բրանդենբուրգի դեսպանը իր հետ Մոսկվա բերեց հոբոյահար* տղաների խումբը, թագավորը սրանց այնպես հավանեց, որ դեսպանին համոզեց իրեն վաճառել ողջ խումբը:

Հատուկ հրամանագրերով, որոնց չենթարկվելը մեծ փորձանքներ էր սպառնում, կամակոր բոյարներին ստիպում էր իրենց երեխաների համար պարուսույցներ պահել տներում: Ծերունիները փնթփնթում էին.

— Ստոր պորտաբույծնե՛ր, տրտինգ տվողնե՛ր, թո՛ւ, ա՛յ քեզ խայտառակությու՛ն, այն էլ տանը մեջ:

Այստեղ էլ մի նոր փորձանք վրա հասավ: Պետրոսը հրամայեց հիսուն ամենաազնվատոհմ բոյարների որդիների արտասահման ուղարկել: Տներում ողբ ու լաց սկսվեց: Թագավորն անողորմ էր.

— Մեռնելու չեմ ուղարկում, սովորելու եմ ուղարկում:

Մեկ տարուց երիտասարդ բոյարները վերադարձան: Կարգին գերմաներեն էին խոսում, ռազմական ճարտարապետությունից հասկանում, գաղափար ունեին բժշկագիտությունից, տեսել էին, ինչպես են նավ շինում, նաև պարել էին սովորել:

Պատմում էին.

— Երաժշտությունն այնտեղ բոլորի սերն է վայելում: Նրանք թատրոններ ունեն, որտեղ ոչինչ չեն խոսում, միայն երգում են, և բոլորը երաժշտության նվագակցությամբ:

Երիտասարդ մայրաքաղաքի՝ Պետերբուրգի հրապարակներում առավոտից երաժշտություն էր հորդում: Պատահում էր, որևէ մեկի անվանակոչու-

---

* Այն ժամանակ բոլոր փողային գործիքների վրա նվագողներին հոբոյահար էին անվանում:

թյան օրը փողոցում նվագախումբ էր հայտնվում և, նրա պատուհանների դիմաց տեղավորվելով, սկսում էր սերենադ նվագել: Մոտակա տներում շրխկոցով փակվում էին պատուհանները, տանտերը ականջները էր փակում: Հետաքրքրասեր ծառաները դուրս էին թափվում և, բերանները բաց, հրաշքի վրա զարմանում:

Այդ նորամուծությունը Պետրոսի ավագ դստերը՝ մեծ իշխանուհի Աննային սիրահարված Շլեզվիգ-Հոլշտինիայի հերցոգ Կարլ-Ֆրիդրիխը բերեց: Ականատեսը պատմում է, որ մի անգամ նոյեմբերի վերջին, առավոտյան ժամը վեցին, դեռ քնած Սանկտ-Պետերբուրգի մութ փողոցներում մի տարօրինակ թափոր հայտնվեց: Առջևից գնում էր առաջնորդը, ետևից՝ տասներկու զինվոր սեղաններ, աթոռներ և մոմեր էին տանում: Նրանց երկու շարքով քսան ջահակիրներ էին հետևում, որոնց միջև «նորին մեծություն» էր իր շքախմբով, իսկ ետևից՝ երաժիշտները: Նրանք կանգ առան պալատի առջև, սեղանները պատուհանների դիմաց դրեցին: Ջահակիրները, դեմքները դեպի պատուհանները, երաժիշտների առջև կանգնեցին: Հետո, գործիքները դարպասի ետևում լարելով, երաժիշտները սկսեցին նվագել: Նվագախումբը տասնութ ընտիր երաժիշտներից էր բաղկացած: Ասում են, անակնկալը գերազանցել էր սպասածին: «Զույգ արքայադստրերը՝ Աննան ու Ելիզավետան, իսկույն, երաժշտության առաջին հնչյունների վրա, երևացին պատուհաններում... և մեծագույն ուշադրությամբ լսում էին»: Պատմողն այսպես է ավարտում իր խոսքը. «Սերենադը հրաշալի ստացվեց, բոլոր այն կանոնների համաձայն, որոնք կատարվում են նրա հոյակապ հայրենիքում: Լիակատար մտապատրանքի համար չնչին բան էր պակասում. Վենետիկի կիզիչ երկինքն ու Ադրիատիկի լազուր ջրերը»: Հոլշտինիայի հերցոգ Կարլը սերենադներով չսահմանափակվեց: Նրա երաժիշտները, որոնց թվում էր փառաբանված ջութակահար Յոհան Հյուտները, մի անգամ իսկական համերգ տվին, կատարելով Կորելլիի, Թելեմանի, Կայզերի կոնցերտները: Եվ թեև սառնամանիքն ու Նևայից փչող խոնավ, սառը օդը խիստ զգացնել էին տալիս իրենց, նվագում էին չափազանց ներշնչված: Համերգից հետո նրանք առատ պարգևներ ստացան, իսկ հերցոգը վարձատրվեց ոչ միայն մեծ իշխանուհիների ուշադրությամբ, այլև «թագավորի ծնողական գրկախառնությամբ»:

Ծուտով ռուսները էլ ընդօրինակեցին նոր սովորույթը. հարուստ տներում հայտնվեցին տնային երաժշտախմբեր: Ասում են, որ հատկապես հայտնի էին իշխան Մենշիկովի, կոմս Մուսին-Պուշկինի, իշխան Գոլիցինի, իշխանուհի Չերկասսկայայի «տնային նվագախմբերը»: Իշխանուհին, որ Պետերբուրգի առաջին գեղեցկուհին էր և ամենամոդայինն կինը, «առանց երաժշտության նույնիսկ ճաշելու չէր նստում»:

Դեսպանատների երաժիշտներից լավագույնները գերադասում էին աշխատել Ռուսաստանում: Պատմում են, որ իբր Հոլշտինիայի հերցոգը երբ իր հայրենիքը վերադարձավ, նրա երաժիշտների մեծ մասը կոնցերտմայստեր Յոհան Հյուտների գլխավորությամբ՝ Ռուսաստանում մնաց, համալրելով պալատական առանց այն էլ մեծ նվագախումբը:

*Թարգմանությունը ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



## ՍՈՎՈՐԻՐ ԿԱՐԴԱԼ ԲՆՈՒԹՅԱՆ ԳԻՐՔԸ



# ԹՌՉՈՒՆՆԵՐԸ





# ՀՈՒՇՈՒՄ ԵՆ...

Թռչունները նույնպես հրաշալի «օդերևութաբաններ» են: Նրանց վարքը լավ ուսումնասիրողները կարող են գուշակություններ անել սպասվելիք եղանակի վերաբերյալ: Այսպես օրինակ, հնուց ի վեր մեր նախնիները նկատել են, որ անձրևից անմիջապես առաջ հավերը սկսում են պատսպարվել հավաբնում, ընդ որում, ձգտում են զբաղեցնել որքան հնարավոր է բարձր թառերը: Անձրև է սպասվում նաև այն դեպքում, երբ մանր թռչունները իրենց բըներում անշարժանում-քարանում են, իսկ ճնճղուկները անբնական կերպով փքում-ուռեցնում են իրենց փետուրները: Հորդառատ անձրևից առաջ, սովորաբար, աքլորները գիլ ծուղրուղու են կանչում, այդ ազդանշանների տոնը և ելևէջները խիստ տարբերվում են ցերեկային լուսատուի ծագմանը նվիրված ողջույնից:

Եթե ամբողջ գիշեր սոխակը երգում է, ապա հաջորդ օրը պարզ, արևոտ եղանակ է սպասվում:

Հրաշալի բարոմետրեր են ճայերը: Ծովայինները և ծովամերձ շրջանների բնակիչները նկատել են, որ եթե այդ թռչունների երամները վաղ առավոտյան դեպի ծով են թռչում, ապա պարզ, արևոտ եղանակ է սպասվում: Ընդհակառակը, եթե ճայերը «ծով չեն դուրս գալիս», կուտակվում են ափերին և անհանգստության նշաններ ցուցաբերում, ապա փոփոխական եղանակ է սպասվում:

Եթե ճնճղուկները խմբեր կազմելով աշխատում են թաքնվել փշատերև բույսերի տերևառատ ընձյուղների արան-

քում, ապա պետք է սառնամանիք կամ ուժեղ բուք սպասել: Եթե ընդհակառակը, նրանք միահամուռ ու աշխույժ ծըլվըլում են, ծառից-ծառ, ճյուղից-ճյուղ թռչկոտում, ապա կարելի է չկասկածել, որ եղանակները տաքանալու են: Եթե ագռավը կեսօրին կռկռում է՝ դեմքով դեպի հարավ դարձած, տաք եղանակ է սպասվում, իսկ եթե կռկռում է դեպի հյուսիս նայելով, դա նշան է եղանակի խիստ ցրտելու: Ագռավը միաժամանակ կենդանի հողմնացույցի դեր կարող է կատարել: Այս տարօրինակ թռչունը միշտ նստում է այնպիսի դիրքով, որ կտուցը ուղղված լինի քամուն: Եթե ագռավները նստում են ծառերի կատարներին, ապա սառնամանիք է սպասվում, ցածր ճյուղերին՝ քամի, գետնին են նստում՝ նշանակում է եղանակը կտրուկ կերպով տաքանալու է: Հաճախ կարելի է տեսնել, թե ինչպես ագռավները երամներով պտտվում են օդում, անհանգիստ տեղից-տեղ տեղափոխվելով: Այս դեպքում կարելի է ըսպասել, որ շուտով ուժեղ սառնամանիքներ են լինելու: Եթե ագռավը իր կտուցը շարունակ թաքցնում է թևի տակ, նշան է եղանակի նկատելիորեն ցրտելու: Իսկ եթե ագռավները թռիչքի ժամանակ «խաղում են», ապա արևոտ, պայծառ եղանակ է սպասվում:

Ձմռանը հավերը թառերի վրա որքան վաղ և բարձր են նստում, այնքան ուժեղ սառնամանիքներ են սպասվում: Հաճախ կարելի է տեսնել, թե ինչպես խաղաղ ու տաք եղանակների ժամանակ կաչաղակները աշխատում են տանիքի քիվի տակ պատսպարվել: Թռչունների այդ վարքը մեզ անսխալ կերպով կարող է հուշել, որ ուժեղ քամի, բուք ու բորան է լինելու: Նույն եզրակացությանը կարելի է հանգել, եթե հավերը իրենց խիստ տարօրինակ են պահում՝ թևերը թափահարում են և պոչերը պըտըտեցնում են: Սառնամանիքներ են սպասվում, երբ աքաղաղները կանգնում են մեկ ոտքի վրա: Սառնամանիքային եղանակների դեպքում եթե աքաղաղները խիստ վաղ են ծուղրուղու կանչում, ապա պետք է ենթադրել, որ շատ շուտով եղանակները տաքանալու են:

Հաճախ կարելի է ականատես լինել, թե ինչպես երաշտահավերը վաղ արշալույսից սկսած ծլվլում են: Դա նըշան է, որ առաջիկա գիշերը սառնամանիքներ են լինելու: Երբ խածկտիկը երգում է, կարելի է գուշակել, որ ձյուն է տեղալու, բայց միաժամանակ սկսվելու է նաև հալհլոցքը: Ձմռանը, ուժեղ սառնամանիքների ժամանակ հաճախ կարելի է տեսնել, թե ինչպես բադերն ու սագերը «լողանում են» ձյան մեջ: Դա եղանակի տաքանալու նշան է:

Թռչունների վարքով կարելի է կանխագուշակել նաև առաջիկա սեզոնի բնույթը: Օրինակ, եթե թռչունները բույն են հյուսում, թառի կամ պատի, ժայռի արևոտ կողմում, ուրեմն, ամառը զով է լինելու: Իսկ եթե ընդհակառակը՝ աշխատում են բունը տեղադրել ստվերոտ կողմերում, նշանակում է շոգ ամառ է սպասվում:

1965 թվականի հոկտեմբերի վերջերին, երբ կռունկները սովորաբար չըվում են դեպի տաք երկրներ, Արարատյան դաշտի այս ու այն վայրերից ահազանգեր ստացվեցին, որ կռունկները տաք երկրներ չվելու ոչ մի «տրամադրություն» չունեն: Անհանգստությունը էլ ավելի մեծացավ, երբ թռչունները չվելու մտադրություն չցուցաբերեցին նաև նոյեմբերին: Արդեն դեկտեմբերին վերջնականապես պարզվեց, որ կռունկները չեն չվելու:

Իսկ այդ տարվա ձմեռը չափազանց մեղմ էր: Ձմռան երեք ամիսների ընթացքում Արարատյան դաշտում ջերմաստիճանը 0-ից ցած չիջավ: Ձմռան ընթացքում անընդհատ անձրևներ էին դիտվում: 1966 թվականի հունվարի վերջերին արդեն որոշ թփատեսակներ ծաղկեցին:

Բանից պարզվում է, որ այս խելացի ու զգայուն կենդանիները բնազդով զգացել էին, որ այդ տարվա ձմեռը արտակարգ մեղմ է լինելու և «որոշել էին» ձմեռանոցներ չմեկնել, մնալ Արարատյան դաշտում:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*



Ֆրանսիայում գտնվող Էվրի բնակավայրի բնակիչ Մորիս Լոտիտոն անցյալ տարվա գարնանը վերջապես կերավ-պրծավ իր... հեծանիվը: Երեք տարի շարունակ նա հետևողականորեն մասերի էր բաժանում իր հեծանիվը և կուլ էր տալիս ռետինի, կաուչուկի, պլաստմասսայի, ապակու կտորտանք, մետաղի խարտոն: Եվ այս ամենը նրա համար, որ իր անձը հիշատակության արժանանա «Գինեսի համաշխարհային ռեկորդների գրքում»:

Գարեջրի գործարանի սեփականատեր Գինեսը առաջին նման գիրքը հրատարակեց 1955 թվականին, բավական համեստ մի նպատակով: Անգլիական գարեջրատների հաճախորդները հաճախակի էին վիճում ամենատարբեր առիթներով: Նրանց տաքացած գլուխներում պարզություն մտցնելու նպատակ էր հետապնդում այդ յուրօրինակ տեղեկատուն:

1979 թվականին լույս տեսավ հերթական՝ 25-րդ հատորը: Իսկ ի՞նչ «ռեկորդներ» են հիշատակվում այնտեղ: Ահա խնդրեմ. ամերիկյան Լեքսինգթոն քաղաքի բնակիչ Հարրի Շոուն ուղիղ 12 ժամ կանգնել է մեկ ոտքի վրա, Թասմանիայի բնակիչ Վիլյամ Չարլթոնը կարողացել է դատարկ կաթի շիշը գլխին անցել 25 կմ 725 մ 27 սմ, ճապոնացի Կազույա Շիոզակին 5 ժամ 37 րոպեում պարանով ցատկել է 49299 անգամ, ավստրալիացի Մայքլ Սպիդը ցնցուղի տակ կանգնել է 8 օր 10 ժամ, անգլիացի Գերհարդ Նոլլը 7 ժամ 35 րոպեում ծնկաչոք սողացել է 16 կմ 90 մ, կոպենհագենցի Յան Ֆորդմանը ծխելով մեկ սիգարեթ, բերանով բաց է թողել 257 ծխե օղակ, նորվեգացի Հանս Լանգսեթը աճեցրել է 5 մ 33,8 սմ մորուք, կանադացի Վիվյան Սիմոնսը իր մարմնի վրա կատարել է 4831 «թեմատիկ» դաջվածք... Եվ նման 15 հազար «նվաճումներ»:

Իսկ ինչո՞ւ են հրապարակվում այդ «ռեկորդները», ո՞ւմ են դրանք պետք: Պատասխանը տրված է գրքի 220-րդ էջում. նրա առաջին հրատարակության օրից վաճառված է ավելի քան 38 միլիոն օրինակ՝ նույնպես յուրօրինակ ռեկորդ, որը առասպելական շահույթներ է բերել հրատարակիչներին:

*Ս. ՎԱՍԻԼԵՎ*

*Նկ. ՎԼԱԴԻՄԻՐ ԱԲՐՈՅԱՆԻ*



# ԿԱՐՊՈՎԸ ԿԱՐՊՈՎԻ ՄԱՍԻՆ

Հայրս գործից տուն գալով, երեկոները իր բարեկամների հետ շախմատ էր խաղում... Շատ փոքր էի, երբ նա ինձ սովորեցրեց խաղի կանոնները և մի քանի անգամ խաղաց ինձ հետ: Բոլորը պարտվեցի: Ամեն պարտությունից հետո լաց էի լինում, մինչև որ հայրըս զայրացավ և ասաց. «Այլևս քեզ հետ չեմ խաղա, տարվելուց հետո շարունակ տզզում ես: Իմացի՛ր, առանց պարտությունների չկան և հաղթանակներ»...

Եղավ ժամանակ, որ մեր բակում այդ խաղը դուրս մղեց բոլոր մյուս տղայական զվարճանքները: Օրեր շարունակ տարվում էինք շախմատով... Եվ, երբ արդեն դպրոց գնալու ժամանակը հասավ, ես կարողանում էի հավասար խաղալ նույնիսկ մեծ տղաների հետ... 10 տարեկան էլ չկայի, երբ լըրացրեցի առաջին կարգայինի նորման...

...ՌՍՖՍՀ-ի պատանեկան առաջնությանը երբ մասնակցեցի, մասնակիցներից ամենափոքրն էի: Ոտքերիս տակ մի փոքրիկ նստարան էին դրել, իսկ աթոռի վրա՝ բարձ, որ կարողանամ խաղատախտակը լավ տեսնել...

...Դպրոցում դասարանից դասարան փոխադրվելիս պատվոգիր էի ստանում: Երբ ավարտեցի Զլատոուստ քաղաքի № 3 յոթնամյա դպրոցը, ինձ մի վկայական տվեցին այն մասին, որ իմ անունը մտցված է դպրոցական տարեգրության մեջ... Տուլայի մաթեմատիկայի թեքումով № 20 դպրոցն ավարտեցի ոսկե մեդալով:

...Ընդունվեցի Մոսկվայի պետական համալսարանի մեխանիկա-մաթեմատիկական ֆակուլտետ: Հավանորեն մաթեմատիկան ավելի մոտ է շախմատին, քան մյուս գիտությունները, սակայն սկսեցի հանախակի մեկնել մրցաշարերին մասնակցելու, և մաթեմատիկայով լրջորեն զբաղվելու ժամանակ չէր մնում: Փոխադրվեցի Լենինգրադի պետական համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետ:

Ինձ համար շախմատն ամենից առաջ պայքար է... Հակառակորդին անհրաժեշտ է հաղթել, և ես ձգտում եմ դրան իմ խաղացած ամեն մի պարտիայի ժամանակ: Շախմատը իմ կյանքն է...

Իսկ շախմատից դուրս..

Սիրում եմ երաժշտություն լսել: Աշխատում եմ հնարավորին չափ շատ կարդալ: Աշակերտական նստարանից սկսած լըրջորեն զբաղվում եմ ֆիլատելիայով: Հավաքում եմ օլիմպիական խաղերին և շախմատին վերաբերող նամականիշներ...

*ԱՆԱՏՈԼԻ ԿԱՐՊՈՎ*
*Միջազգային գրոսմայստեր, աշխարհի կրկնակի չեմպիոն*



# ԿՅԱՆՔ, ՈՐ ՆՎԻՐՎԵՑ ԲՆՈՒԹՅԱՆԸ

*ՕԿՍԱՆԱ ԿՈՒԼԻԿ*

Ո՞վ է Ջոյ Ադամսոնը. տաղանդավոր գրո՞ղ, նուրբ արվեստագե՞տ, թե՞ քըննող բնախույզ: Աշխարհի բոլոր երկըրների միլիոնավոր մարդիկ, որոնք Ադամսոնին ճանաչում են նրա «Ազատածինը», «Ազատ ապրողը», «Հավիտյան ազատը», «Բծավոր սֆինքսը», «Պիպպը մարտահրավեր է նետում», «Աֆրիկան Ջոյ Ադամսոնի աչքերով» գրքերից (որոնցից շատերը էկրանավորված են), գիտեն, որ Ջոյի կյանքի այս երեք հափշտակությունները միախառնվել են: Գրող, արվեստագետ թե բնախույզ, Ադամսոնը ծառայել է բնության պահպանման վեհ նպատակին:

Ջոյ Ադամսոնը կենսաբան չէր: Բայց կենդանական աշխարհի նկատմամբ բուռն սերը, դիտողականությունն ու

համառությունը օգնեցին նրան մոտիկից ճանաչելու Աֆրիկայի վայրի բնությունը, ուսումնասիրելու այդ աշխարհամասի խոշոր կատուների էկոլոգիան: Այսուհետև աֆրիկյան ֆաունան ուսումնասիրողները չեն կարող աչքի առաջ չունենալ Ադամսոնի գրքերը:

Այս տարի Ջոյ Ադամսոնը 70 տարեկան կլիներ: Ողբերգական մի պատահար կտրեց նրա կյանքի թելը: Վայրի գազաններով լի Շամբա արգելանոցում Ջոյը արյունարբու առյուծին կամ գազազած գոմեշին չէ, որ զոհ գնաց, այլ ընկավ սրիկայի ձեռքով: Կիսատ մնաց նրա «Շամբայի թագուհի Պեննին» վերջին գիրքը: Բայց ապրում է Ջոյի գործը նրանց համար, ովքեր կարդալով հիանալի գրողի և բնագետի գրքերը, ավելի ուժգին սկսեցին սիրել բնությունը և հասկացան այն պահպանելու անհրաժեշտությունը: Մնաց ձեզ՝ պատանիներիդ, հղած նրա կրքոտ կոչը՝ «Վաղվա կենդանական աշխարհը պահպանելու մեծ պատասխանատվությունը ընկնում է նրանց վրա, ովքեր կյանքն սկսում են այսօր»:

Ծնողներիս հետ Արևելյան Աֆրիկայում անցկացրած վեց տարիների ընթացքում մենք շատ էինք այցելում տեղի արգելանոցներն ու ազգային պարկերը: Առաջ ես երբեք չէի հավատա, թե մեքենայի մեջ նստած մարդիկ այնքան կարող են մոտենալ առյուծին, որ առյուծը պոչը իրեն քաշի, վախենալով մեքենայի անիվների տակ թողնել: Կամ էլ դիտել փղերի մեծ հոտերը, նրանցից բոլորովին չվախենալով: Այժմ դա հնարավոր է դարձել, որովհետև աֆրիկյան ազգային պարկերում կրակոցները վաղուց դադարել են, և վայրի գազանները վարժվել են զբոսաշրջիկների այցելություններին:

Սակայն աֆրիկյան բազմաթիվ իմ ուղևորություններից ամենավառը Ջոյ Ադամսոնի հետ է կապված: Մինչ այդ ես արդեն դիտել էի նրա սցենարով նկարահանված «Ազատածինը» ֆիլմը և կարծում էի պատրաստ եմ հայտնի բնախույզի հետ հանդիպելուն:

Ադամսոնները ապրում էին Նայվաշա լճի մոտ: Քենիայի մայրաքաղաք Նայրոբիից ճանապարհն այնտեղ էր ձգվում աֆրիկյան մեծ բեկվածքի եզրով: Ճանապարհի աջ կողմում խիտ, մշտադալար անտառներով ծածկված լեռներ են, իսկ ձախում՝ գահավեժ քարափ, ավելի հեռու, ցածում՝ թեժ, դեղին հարթություն: Նրա վրա տեղ-տեղ հովանոցանման ակացիաներ և բազմաստեղյան, արտառոց տեսքով իշականթնուկներ են անում: Այդ հարթության ամենացածր մասում էլ հենց գտնվում է Նայվաշա լիճը, որը հեռվից փայլփլում է արևի տակ:

Շեղվելով գլխավոր խճուղուց, անցանք փոշոտ ճանապարհով և «Ադամսոններ» ցուցանակով վայրը հասանք: Ծառերի ետևում մեծ քարե տուն էր, բաց պատշգամբով, առջևում՝ մի մեծ բացատ, որի խոտը խուզած էր: Բացատի մեջտեղում, նկարակալի առջև ոչ բարձրահասակ նիհար մի կին էր կանգնած՝ նկարում էր: Դա էլ հենց միսիս Ջոյ Ադամսոնն էր: Անսպասելիորեն հայտնվող լրագրողները, բնախույզգիտնականները կամ էլ ուղղակի զբոսաշրջիկները սովորական երևույթ էին այս տանը:

Միսիս Ադամսոնը մեզ տուն հրավիրեց: Մեծ, արևով լեցուն սրահում կահույք համարյա չկար. միայն դաշնամուր և պատերից կախված նկարներ էին:

— Այս սենյակը իմ կենսագրության սկիզբը կարելի է համարել,— ասաց նա: — Ծնվել եմ Ավստրիայում, «երաժշտության երկրում» և դրա համար էլ նախքան գրել և կարդալ սովորելը դաշնամուր արդեն նվագում էի: Այնտեղ էլ ավարտեցի կոնսերվատորիան:

Բայց հետո Քենիա ընկա և այնպես տարվեցի նրա բնության հարստությամբ և գեղեցկությամբ, որ երաժշտությունը թողեցի, սկսեցի զբաղվել նկարչությամբ: Ուզում էի թղթի վրա դրոշմել տեսածս զարմանալի գույներն ու ձևերը: Տեսածս ամեն մի մանրունք գրավում էր ինձ, և հենց այդ ընթացքում էլ ես ձեռք բերեցի այն մանրակրկիտ դիտողականությունը, որը այնքան պետք եկավ հետագայում՝ վայրի կենդանիների հետ շփվելիս:

Դիտում եմ նկարները: Ի՜նչ ասես չկար այստեղ. վառ կարմիր ձկնիկներ, որոնց Ադամսոնը նկարել էր Հընդկական օվկիանոսի խութերի վրա, Քենիայի հարուստ բուսականության հարյուրավոր տեսակների ուրվանկարներ, իրենց ձևերով ծաղիկներ հիշեցնող վառ, արտասովոր թռչուններ, Արևելյան Աֆրիկայում բնակվող ժողովուրդների և ցեղերի ներկայացուցիչների մի ամբողջ պատկերասրահ: Ահա և նրա վերջին աշխատանքները. առյուծների ջրաներկ պատկերումներ, անտիլոպների (այծքաղների), կապիկների, ընձուղտների մատիտով կատարված նուրբ ուրվանկարներ:

Իմ հետաքրքրությունը տեսնելով, Ադամսոնը մոտեցավ ինձ.

— Դո՞ւր է գալիս: Միշտն ասած ես երբեք էլ նկարիչ դառնալ չեմ ուզեցել: Բայց բուսաբանների հետ Քենիա գալով, տարվեցի հերբարիում հավաքելով, հետո սկսեցի հավաքած բույսերն ուրվանկարել: Որոշ ժամանակ անց դա իմ մշտական զբաղմունքը դարձավ: Էլ չեմ ասում, որ համարյա ամեն մի ուրվանկար հետաքրքիր, նույնիսկ վտանգավոր արկածի հետ է կապված: Վերցնենք թեկուզ լոբելիայի երեք մետրանոց մոմերը,— ասաց նա, մոտեցնելով ինձ նկարին:— Սրանք բարձր ալպիական մարգագետիններում են աճում, որտեղ առավոտները ցուրտ է լինում: Տաքանալու համար ես մի քանի չոր բույս պոկեցի և խարույկ վառեցի: Հետո ինչ եղավ, չեմ հիշում: Ուշքի եկա դժոխային գլխացավով, շրթունքներս ու կոպերս ուռել էին: Սիրտս խառնում էր: Պարզվեց, որ լոբելիայի ծուխը թունավոր է: Երեք օր ուշքի չէի գալիս: Իսկ այս ծառանման խաչածաղիկները նկարել եմ երեք աֆրիկացու հսկողությամբ, որովհետև մոտակայքում փղեր էին շրջում, որոնք աֆրիկացիներից չեն վախենում և այնքան մոտեցան, որ ես փախա,— ծիծաղելով պատմում էր նա:

Միսիս Ադամսոնը պատմեց նաև մի հետաքրքիր բույսի՝ կեղծ բանանի մասին, որի ցողունից և տերևներից մի անգամ... 190 լիտր ջուր էր քամել:

Հիացմունքով նայում եմ այս զարմանալի համարձակ կնոջը: Ես իմ համարձակությամբ պարծենալ չեմ կարող: Երբ Ադամսոնը մեզ հրավիրեց ծանոթանալ առյուծ Բոյի՝ «Ազատածինը» ետևից հարձակվի՞ մեզ վրա»,— մտածես ինձ վատ զգացի:

Բոյն այդ ժամանակ հիվանդ էր. նա, հաշվի չառնելով իր ուժերը, Մերու պարկում հարձակվել էր շատ մեծ մի գոմեշի վրա, և գոմեշը պատռել էր նրա կողքը: Առյուծը առողջանում էր, բայց որս անել չէր կարող, ուստի և միսիս Ադամսոնը նրան Նայվաշա էր բերել: Նա վանդակում չէր ապրում, այլ մետաղե ցանցով շրջափակված հսկա մի հողակտորի վրա:

Ցանցից ներս մտնելով, մենք թփուտների միջով առաջ գնացինք: «Իսկ եթե Բոյը այնքան էլ հիվանդ չէ և թփերի ետևից հարձակվի՞ մեզ վրա»,— մտածեցի ու կանգ առա:

— Գնանք, գնանք,— ժպտալով ասաց Ադամսոնը և ձեռքիցս բռնեց:— Բոյը սովորաբար հանգստանում է այն մեծ ծառի ստվերի տակ:

Առյուծը ճիշտ որ այնտեղ պառկած էր: Մեզ տեսնելով, նա անտարբեր շուռ եկավ, երևի ձանձրացել էր հետաքրքրասեր այցելուներից: Սակայն երբ տիրուհին նրան կանչեց, չկամորեն վեր կացավ և թեթև կաղալով ուղղվեց մեր կողմը: Մոտեցավ Ջոյին և գլխով ըսկըսեց քսվել ձեռքերին:

Սարսափից թաքնվեցի Ջոյի ետևում, բայց Ադամսոնը ինձ գրկեց և «պետք չէ, պետք չէ վախենալ» ասելով, մոտեցրեց առյուծին: Բոյը պառկեց մեր ոտքերի մոտ և կատվի պես սկսեց մռռալ: Տեսնելով, որ օտար մարդկանց փաղաքշանքները նա շատ անտարբեր է ընդունում, ես հանգստացա: Սակայն չհամարձակվեցի ուրիշների պես խառնել նրա բաշը:

— Իսկ ինչը ձեզ հանգեցրեց գազանների հետ սերտ շփման մեջ մտնելու մտքին,— հետաքրքրվեց հայրս:

— Երևի նկարչությունը,— մի փոքր մտածելուց հետո պատասխանեց Ադամսոնը: — Չէ՞ որ բնության հետ շփումը զուր չի կորչում: Մեկի հետ ծանոթությունը հետաքրքրություն է առաջացնում և մյուսի նկատմամբ: Ես կանգնում էի նկարակալի առջև ու ծաղիկներ էի նկարում, իսկ շուրջս զբոսնում էին վայրի կենդանիները: Սկզբում ես նրանցից վախենում էի, հետո վարժվեցի, ապա սկսեցի հետաքրքրվել նրանց վարքուբարքով: Սկսեցի կենդանիներին նկարել և հասկացա, որ եթե նրանց վնաս չհասցնես, քեզ խելացի պահես, կարող ես փոխըմբռնման հասնել: Պատահում էր, շաբաթներով առյուծների պրայդի (ընտանիքի) կյանքից ուրվանկարներ էի անում, և առյուծներից ոչ մեկը ոչ մի անգամ իմ նկատմամբ թշնամություն չցուցաբերեց:

Իսկ հետո, երբ արդեն ամուսնացել էի Ջորջի հետ, որն աշխատում էր բընության պահպանության դեպարտամենտում, հաճախ մեզ մոտ էին բերում վայրի կենդանիների, դրանց թվում և առյուծների, որբացած ձագերին: Սրանց մեջ էր նաև Էլզան: Այստեղից էլ սկսվեց... Բարեկամացա Էլզայի հետ, նրա մասին գիրք գրեցի: Ապա «Ազատածինը» ֆիլմի նըկարահանումների համար պետք եղավ քանիհոգ, իսկ «Ազատ ապրողը» ֆիլմի համար՝ քանիյոթ առյուծ «դաստիարակել»: Բայց Էլզայի պես բարեկամ ես այլևս չեմ ունենա: Դրա համար էլ որոշեցի առյուծներին Ջորջին տալ, իսկ ինքս զբաղվել վագրակատուներով: Ինձ մոտ՝ Մերու ազգային պարկ հյուր եկեք: Ձեզ ցույց կըտամ իմ նոր սիրելիին՝ Պիպպին:

Պիպպին տեսնել ես շատ էի ուզում, որովհետև Քենիայի ազգային պարկերում առյուծ տեսնելը սովորական բան է, իսկ վագրակատվի հազվադեպ կարելի է հանդիպել: Միայն մի անգամ, շատ հեռվից, մեքենայի ճանապարհը կտրեց-անցավ կատաղի արագությամբ սլացող երկարոտն մի կատու և անհետացավ թփուտների մեջ:

Մենք Մերու ընկանք մեկ ու կես տարի հետո միայն: Պիպպը սպանվել էր, բայց նրա մեծացած ձագերը այցելում էին Ջոյին և նրա վրանի առջև խաղեր սարքում:

Հաջորդ օրը մեզ բախտ վիճակվեց տեսնել թե ինչպես է Պիպպի թոռնուհիներից մեկը իր համար կերակուր հայթայթում: Քարերի մեջ պահ մըտած, անտիլոպների (այծքաղների) հոտի մոտենալուն սպասելով, վագրակատուն, երկար պոչը տնկած, դուրս թռավ թաքստոցից և առաջ սլացավ: Երբ անտիլոպները նկատեցին գիշատչին և փախուստի դիմեցին, վագրակատուն վազքից թռիչքների անցավ: Անտիլոպները լավ վազողներ են, ու

չնայած դրան, տարածությունը նրանց միջև գնալով կրճատվում էր: Թռի՛չք, և գիշատիչը, ոտքերը մարմնին կպցրած, հրթիռի պես առաջ սլացավ: Գետնին իջնելով, նա որոշ ժամանակ նորից վազեց, հետո էլի՛ թռիչքի անցավ: Եվս մի թռիչք, և գիշատչի առջևի թաթերը գետին տապալեցին ջահել անեղջյուր էգին: Մի փոքր պայքարելուց հետո, զոհն անշնչացավ:

Հաղթանակը, սակայն, հեշտ չտրվեց վագրակատվին: Նա անմիջապես չհարձակվեց զոհի վրա, այլ ծանր և ընդհատ շնչելով, պառկեց կողքին: Տասնհինգ րոպե անցավ, մինչև որ արագ վազքից խանգարված շնչառությունը կանոնավորվեց:

Հետո նստեց ետևի թաթերի վրա և սկսեց ընդհատ-ընդհատ ռռնալ: Ռռնաց մի քիչ, հետո տեղում թռիչքներ կատարեց, կարծես առջևում ինչ-որ բան փնտրելով, էլի ձայն տվեց:

— Ժայռերի մեջ թաքնված իր ձագերին է կանչում,— բացատրեց Ադամսոնը: — Ընդհանրապես վագրակատուների վարքի մասին շատ քիչ բան էր հայտնի, դրա համար էլ որոշեցի զբաղվել Պիպպով: Ութ ամսական ձագ էր, երբ ինձ մոտ բերին: Ի տարբերություն առյուծների, որոնք շփվող են, վագրակատուները ծածկամիտ են, ներփակված: Ուստի դժվար է նրանց հետ շփման մեջ մտնել: Նրանց վարքի մեջ շատ բան հանելուկային է: Դրա համար էլ, երբ ես Պիպպին բաց թողեցի բնության գիրկը, անկեղծ ասած, ոչ մի հիմք չունեի հավատալու, թե մեր բարեկամությունը կշարունակվի:

Սակայն, իմ մտահոգությունն իզուր էր: Պիպպը եկավ մեզ տեսության, մի անգամ էլ փախել-ազատվել էր ընձառյուծի հետապնդումներից, հետո էլ հենց այնպես էր եկել:

Հուզիչ էր հատկապես Պիպպի վստահությունը իմ նկատմամբ, երբ սերունդ ունեցավ: Ձագեր ծնելուց մի քանի օր հետո, նա ճամբար եկավ, քսվեց ոտքերիս, հետո ատամներով փեշիցս քաշելով ինձ իր բույնը տարավ: Տապալված ծառի մոտ մի քանի փափկամազիկ փոքրիկ կատվիկներ կային: Այդ վստահությունը հուզիչ էր նաև այն պատճառով, որ Պիպպը վախենում էր իր առաջնեկների համար: Առաջին վեց ամիսների ընթացքում մի քսան անգամ նա ձագերին տեղից-տեղ փոխադրեց: Վագրակատուները շատ թշնամիներ ունեն, որոնց թվում, դժբախտաբար, առաջին հերթին՝ մարդը: Թանկագին մորթու համար որսագողերը չեն խնայում այս գեղանազ կատուներին: Դրա հետևանքով վագրակատուն, որ այս տեղերում շատ տարածված գիշատիչ էր, այժմ հազվադեպ է հանդիպում:

Հրաժեշտ տալով մեզ, Ջոյ Ադամսոնն ասաց, որ հրատարակիչներից ու կինոընկերություններից ստացած դրամական միջոցներով մտադիր է Մերուից ոչ շատ հեռու ազգային նոր պարկ ստեղծել և անվանել այն Ծամբա, որտեղ վագրակատուներին և ընձառյուծներին հատուկ ուշադրություն պետք է դարձվի:

Նրա ցանկությունը իրականացավ: 1979 թ. Քենիայի մամուլը ազդարարեց, որ վերջին տասը տարիների ընթացքում վագրակատուների թիվը Ծամբայում համարյա երեք անգամ ավելացել է: «Բծավոր սֆինքսները» երկրի երեսից չեն անհետանա: Այդտեղ մեծ ներդրում ունի Ջոյ Ադամսոնը, հիանալի բնախույզը, նկարիչն ու գրողը, որն իր կյանքը նվիրաբերեց բնության պահպանության ազնիվ գործին:

*Թարգմ. Ա. ՄԱՆԱՍՅԱՆԻ*




## ԳԻՏՆԱԿԱՆԻՆ ՎԱՅԵԼ ՎԱՐՔ

Մեծ Էյլերը կարդալով Լագրանժի՝ իրեն ուղարկած ձեռագիրը վարիացիոն հաշվարկման մասին, այդ թեմայի վերաբերյալ իր սեփական տրակտատի տպագրությունը հետաձգել է, որպեսզի երիտասարդ թուրինցին իր առպագայի համար կարևոր այդ աշխատությունը առաջինը տպագրի:

●

1903 թվականի փետրվարին, ռուսական ֆիզիկաքիմիական ընկերության քիմիական բաժանմունքին ռուս հայտնի քիմիկոս Մ. Կուչերովի (1850—1911) ուղարկած մի նամակից իմանում ենք, որ գիտնականը խնդրում է ընկերության դրամարկղ ընդունել 500 ռուբլի: «Այս գումարը ես ընկերությունից որպես պարգևադրամ եմ ստացել ացետիլենային ածխաջրածինների շարքում իմ կատարած աշխատանքների համար,— գրում Կուչերովը:— Հավիտենապես պահպանելով ամեն մի պատվավոր պարգևի էականն ու թանկագինը՝ բարձր պատիվը, որ կրում է այն իր մեջ, սիրով վերադարձնում եմ պարգևի նյութական մասը, որպեսզի այն մեկ անգամ էլ ծառայի իր նախկին նպատակին՝ պարգևադրամի ձևով... մաքուր քիմիայի բնագավառում կատարվելիք հետագա հայտնագործությունների համար...»:

●

Երեք հայտնի անգլիացիներ՝ Կ. Ռենը, Ռ. Հուկը և Է. Հալլեյը մի անգամ վիճել են մոլորակների շարժումը ղեկավարող օրենքների վերաբերյալ: Որոշ ժամանակ անց նրանցից մեկը՝ Հալլեյը, այդ մասին խոսք է բացել Նյուտոնի մոտ, իսկ սա գործի մեջ նրան հաղորդել է համաշխարհային ձգողականության օրենքի իր հայտնագործությունը: Զրուցակիցը պաշել է և աղերսել Նյուտոնին, շուտափույթ կերպով հայտնել Թագավորական ընկերությանը հայտնագործության մասին: Ավելին, նա ինքն է շտապել հայտնել ընկերությանը, որ Նյուտոնի մոտ հիանալի թեորեմներ պարունակող ձեռագիր է տեսել, իսկ հետո էլ Քեմբրիջի մաթեմատիկոս Փեջեթի հետ տառացիորեն ստիպել են նրան գրել Թագավորական ընկերությանը իր գործերը հրատարակելու մասին: Նյուտոնը արդեն չէր կարող նահանջել, մեկ տարի անց, 1686 թվականի ապրիլին, ընկերությունը ստացավ ձեռագիրը՝ «Բնական փիլիսոփայության մաթեմատիկական հիմունքները» մեծ աշխատությունը:

## ՌՈԲՈՏՆԵՐԸ... ՌՈԲՈՏ ԵՆ ՊԱՏՐԱՍՏՈՒՄ

Չկարծեք թե այս վերնագիրը գիտաֆանտաստիկ վեպից մեջբերում է: 1981 թվականին շահագործման է հանձնըվելու մի գործարան, որտեղ ամեն ինչ հենց այդպես էլ պետք է լինի:

Գործարանը գտնվում է Տոկիոյի մոտերքում, Ֆուձիյամա լեռան ստորոտում: Նոր ձեռնարկության հաստիքը բաղկացած է 30 ռոբոտից և 150 ինժեներից, ըստ որում ամենաաշխատատար գործերը կատարելու են «մեխանիկական աշխատողները»: Պլանավորվում է ամեն ամիս 350 ռոբոտ արտադրել:



# ԿԱՐԴԱ ԵՎ ՀԻՇԻՐ

ԲԺՇԿԱԿԱՆ ԶՐՈՒՅՑ

Հաճախ է պատահում, որ երեխաները, մեծ կամ փոքր, նկատելով որևէ մութ անկյունում կուչ եկած, որևէ անտուն, նիհար կենդանու՝ շան, կատվի, կարեկցում են, մոտենում որ գրկեն, տուն տանեն, կերակրեն, պատսպարեն: Ցավոք, նման սրտացավություն հանդես բերողները համարյա միշտ էլ չարաչար տուժում են: Կենդանին հաճախ վարակված է լինում «կատաղություն» հիվանդությամբ, որի հարուցիչը սովորական մանրադիտակով անտեսանելի՝ քամվող (ֆիլտրվող) վիրուս է: Վարակը բնության մեջ պահպանվում է հիվանդ գայլերի, աղվեսների, վայրի կատուների և այլ կենդանիների օրգանիզմներում: Վերջին տարիներին եվրոպական երկրներում նկատվում է «կատաղության» դեպքերի ավելացում: Հիվանդ աղվեսներից վարակվում են շները, կովերը, և մյուս ընտանի կենդանիները: Հիվանդ կենդանին կծում է առողջին և վարակում նրան: Վարակված կենդանին դառնում է անհանգիստ, ներքին ծնոտը կախվում է, իսկ ըմպանի և որկորի մկանների կաթվածի պատճառով անկարող է լինում կեր և ջուր ընդունել, երախից ծորում է մածուցիկ և կպչուն թուքը, որից ազատվելու համար նա շարունակ թափահարում է գլուխը:

Մարդկանց համար առավել վտանգավոր են կատաղած շները, որոնք չափազանց ագրեսիվ լինելով, ունեն անշարժ, չար հայացք, խուլ հաչոց և անսպասելիորեն հարձակվելով, հանդիպողին կծում և վարակում են: Վարակվածի հիվանդության գաղտնի շրջանը 40—50 օր է, բայց երբեմն կարող է երկարել մինչև մեկ տարի, որից հետո նկատվում է ջերմության բարձրացում, շնչառության խանգարում, զառանցանք, հալյուցինացիա, ջղաձգություններ և կատաղության այլ երևույթներ, բառիս ուղղակի ու փոխաբերական իմաստով: Սովորաբար հիվանդությունը տևում է 4—5 օր և վերջանում է մահով: Մինչև օրս ամբողջ աշխարհում ապաքինման միայն մեկ եզակի դեպք է նկարագրված:

Եթե այժմ ամեն ոք գիտե, որ խոլերայից պաշտպանվելու համար չպետք է օգտագործել հում ջուր և անլվա բանջարեղեն, ապա շատ քչերին են հայտնի կատաղությունից պաշտպանվելու միջոցներ: Անհրաժեշտ է հիշել, որ կասկածելի կենդանու հարձակման դեպքում նախ անհրաժեշտ է պաշտպանել դեմքը և պարանոցը, բայց եթե, այնուամենայնիվ, լինում են վնասվածքներ, հարկավոր է անհապաղ դիմել բժշկի՝ կանխարգելող պատվաստի հատուկ կուրս ընդունելու համար: Վերքերն էլ անհրաժեշտ է իսկույն լվանալ խիտ օճառով և մշակել յոդով, սպիրտով, որևէ թթվով, կամ էլ ախտահանիչ այլ նյութերով: Լվանում են նաև աչքերի ու բերանի լորձաթաղանթները, քանի որ կենդանու լորձում գտնվող վիրուսը հեշտությամբ ախտահարում է դրանք: Հիվանդության կանխումը ապահովելու համար տնային կենդանիներին պատվաստում են կատաղության դեմ, ոչնչացվում են անտուն ու թափառաշրջիկ շներն ու կատուները, որոնց թիվը քիչ չէ նաև մեզ մոտ:

Չնայած ամբողջ աշխարհում ծավալված ինտենսիվ պայքարին, միայն հաշվառում կատարող 92 երկրներում, տարեկան, կատաղությունից մահանում են ավելի քան 600 մարդ, իսկ կես միլիոնի չափ էլ՝ հազիվ փրկվում են ձեռնարկվող կանխարգելիչ միջոցառումների շնորհիվ:

Մեզ մոտ ստեղծված են բոլոր անհրաժեշտ նախապայմանները այդ սարսափելի հիվանդության վերջնական վերացման համար:

*ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ*

*բժիշկ, կենսաբանության թեկնածու*

*Լեհական բանահյուսությունից*

# Քահանան ու դերասանը

Հանդիպում է ճանապարհին
Հանրածանոթ դերասանը քահանային.
— Այդ ինչի՞ց է, իմ հարևան,—
Հարց է տալիս ծեր քահանան,—
Ե՞րբ էլ որ դու հայտնվում ես մեր բեմերում,
Լեփ-լեցուն են լինում մարդիկ դահլիճներում:
Իսկ ես քարոզ եմ մատուցում
Կամ պատարագ,
Դուրս են գալիս եկեղեցուց մարդիկ արագ...
— Որովհետև,— դերասանն է խոսում
հանգիստ,—
Բեմում ասած իմ խոսքերին
Հավատում եմ ես ջերմորեն, լալիս, խնդում,
Իսկ դու ինքդ քո քարոզին չե՛ս հավատում:

# Փոթորկի պահին

Նավը արդեն մոտենում էր ափերին,
Մեկ էլ ծովում մեծ փոթորիկ բարձրացավ:
Նավավարը հանգիստ ելավ իր տեղից
Եվ վախեցած ժողովրդին մոտեցավ:
— Ձեզանից ո՞վ կարող է լավ աղոթել,—
Հարցրեց նա ճամփորդներին դիմելով:
— Իհարկե, ես,— բացականչեց անհամբեր
Մի վարդապետ՝ ոտքից-գլուխ դողալով:
— Լավ, սրբազան, ուրեմն դու աղոթիր,
Ջերմ աղոթիր սրբերին և մե՛ր տեղակ.
Մյուսները թող շուտ հագնեն օղակներ,
Դժբախտաբար պակասում է մի օղակ...
Եվ օղակներ հագան բոլորն հապշտապ
Ու լողալով ափ դուրս եկան, փրկվեցին:
Իսկ վարդապետն ինչքան էլ ջերմ աղոթեց,
Սրբերը խուլ չլսեցի՞ն, չօգնեցի՞ն...

*Նկ. ՄԿՐՏԻՉ ԿՈՓՅԱՆԻ*



ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-
ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-35, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 8 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը ՎԱՀԱԳՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ,
Երևան, 9 տ.

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ս. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 30.6. 1981 թ.: Ստորագրված է տպագրության 12.8. 1981 թ.: ՎՖ 10320: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն: 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 61262: Պատ. 1580: Գինը 15 կ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2։
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.




Հնում ֆուտբոլ, վոլեյբոլ ու նման խաղեր չեն եղել։

Իսկ ի՞նչ են խաղացել մեր ապուպապերը երեխա ժամանակ։

— Լախտի, չիկ դաստա, պահմտոցի...— կասեք դուք։

Ճիշտ է, բայց եղել են նաև ուրիշ շատ խաղեր, որոնք այժմ մոռացվել են։ Այդ խաղերը ունեցել են բազմաթիվ տարբերակներ. այսինքն՝ նույն խաղը տարբեր գավառներում տարբեր են խաղացել, ճիշտ այնպես, ինչպես ժողովրդական հեքիաթները, երգերը, պարերը։

Այնպես որ, երևի, ձեզանից շատերը կուզենան իմանալ, թե ինչ խաղեր են եղել Հայաստանում և դրանցից ո՞րն է հասել մեզ։

Բարեբախտաբար միջնադարից սկսած, մեր գրիչների, պատմագիրների և գրողների շնորհիվ մեզ հասել են բազմաթիվ խաղերի ու մարզանքների նկարագրություններ։ Այդ խաղերից առավել հետաքրքիրները ամսագրում պարբերաբար կներկայացնենք մեր ընթերցողներին։ Սովորեցեք և փորձեք խաղալ։ Եվ կհամոզվեք, թե որքան գեղեցիկ ու գրավիչ են դրանք և ամենևին չեն զիջում այսօրվա տարածված խաղերին։

# «ՔԱՆԻՍԵՆ»

Խաղում են երկուսով։ Մեկը «հարցնողն է», մյուսը՝ «պատասխանողը»։ Ընտրում են 45 հատ ոչ մեծ, ողորկ քարեր։ Գետնին խաչաձև գծելուց հետո քարերից 5-ը դնում են խաչի կենտրոնում։ Մնացած 40 քարերը դասավորում են կենտրոնից դուրս եկող չորս թևերի վրա՝ գծագրում ցույց տրված ձևով. կենտրոնում 5 քար, թևերի վրա նախ 4-ական, մի քիչ հեռու 3-ական, հետո 2-ական, ծայրերին՝ մեկական քար։



Ապա որոշում են, թե հարցնողն ով պիտի լինի, պատասխանողն ով, և սկսում են խաղը։

Հարցնողը նստում է քարակույտերի մոտ, պատասխանողը՝ մեջքով դեպի քարերը։

Հարցնողը ամեն մի հերթական կույտից քար վերցնելուց առաջ, նախապես հարցնում է. «քանիսե՞ն», այսինքն ինքը ո՞ր, քանի՞ քարանոց կույտից է վերցնելու։

Կենտրոնի հինգ քարանոց բնից սկսած՝ մեկական քար վերցնելով, հարցնողը հասնում է մինչև թևի ծայրը, ուր մեկ քար կար։ Ծայրի միակ քարը վերցնելուց հետո դարձյալ կենտրոնական բնից է սկսում ու անցնում հաջորդ թևին և այսպես շարունակ։

«Քանիսե՞ն» հարցը լսելիս պատասխանողը պետք է հիշի, թե որ բնում քանի քար է մնացել, իսկ եթե քար չի մնացել, ապա հարցնողի ամեն մի հերթական «քանիսեն» հարցին պետք է պատասխանի «հեչեն», այսինքն, դատարկ բնից։ Եթե պատասխանողը սխալվեց, նա պարտված է համարվում։

Անկախ նրանից, պատասխանողը կպարտվի թե կհաղթի, հաջորդ անգամ խաղացողների դերերը փոխվում են։ Հարցնողը կարող է երբեմն հուշել պատասխանողին։ Բայց նախքան խաղը սկսելը պետք է անպայման պայմանավորվել, թե քանի՞ անգամ կարելի է հուշել։

